


ԲՈՐԻՍ ՆԻԿՈԼՍԿԻ

Այդ օրը կարմիր դրոշները հանդիսավոր փողփողում են: Այդ օրը հոկտեմբերիկներն ընդունվում են պիոներական կազմակերպության շարքերը: Իսկ պիոներները գարնանային ծաղիկներ են դնում Լենինի հուշարձանին:

Ի՞նչ օր է դա, որ այդպես հանդիսավոր է նշվում:

Դա ապրիլի 22-ն է, Լենինի ծննդյան օրը: Այժմ ամբողջ աշխարհին է հայտնի այդ տարեթիվը: Իսկ ինչպե՞ս էր Լենինը նշում իր ծննդյան օրը:

Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան՝ Լենինի կինն ու զինակիցը՝ հիշում էր, որ Իլյիչի ծննդյան օրն իրենք սիրում էին զբոսնել գարնանային անտառում կամ հեռանալ մի որևէ տեղ: Սակայն շատ քիչ դեպքում էր Լենինին հաջողվում անցկացնել իր ծննդյան օրն այդ ձևով:

Նա հաճախ այդ օրը դիմավորում էր՝

աքսորում,

բանտում,

հայրենիքից հեռու՝ արտասահմանում,

հեղափոխական Պետրոգրադում,

կամ էլ Կրեմլում՝ շտապ գործ կատարելիս:

Ահա թե ինչպես էր դա լինում:

## ԱՔՍՈՐՈՒՄ

Լենինը իր չափահաս լինելը նշեց՝ առաջին անգամ աքսորվելիս: Նա նոր միայն բոլորում էր իր տասնութ տարին, երբ առաջին անգամ բանտարկեցին: Այդ ժամանակ Կազանի համալսարանի ուսանող էր: Բանտարկեցին ուսանողական ժողովին մասնակցելու համար:

Ուսանողներին տարան բանտ, փակեցին ընդհանուր խցում:

Այնտեղ նրանք աղմկում, գոռգոռում էին: Ոմանք հեղափոխական երգեր էին երգում: Ոմանք էլ արտասանում արգելված ոտանավորներ:

Բոլորին տիրել էր ոգևորությունը: Ե՛վ ուրախ էր, և՛ սարսափելի: Ոչ ոք չգիտեր, թե իրեն ինչ է սպասում:

Միայն Լենինն էր նստել լուռ և մտախոհ: Տարիքով նա բանտարկյալներից ամենափոքրն էր:

Ինչ-որ մեկն ընկերներին սկսեց կատակով հարցնել, թե ինչ են մտադիր անել հետո, երբ ազատ արձակվեն: Ոմանք անորոշ ուսերն էին թոթվում: Ուրիշներն իրենց քաջ էին ձևացնում և անհոգ ծիծաղում. իբր հետագայում պարզ կլինի, կամ թե՝ իրենք բոլորովին էլ չեն վախենում:

Հերթը հասավ Լենինին:

— Դե, իսկ դու ի՞նչ ես մտադիր անել:

Լենինը լռեց մի փոքր և ասաց.

— Մտածելու ոչինչ չունեմ, իմ ճանապարհն արդեն հարթել է մեծ եղբայրս:

Սենյակում իսկույն լռություն տիրեց, որովհետև բոլորին հայտնի էր, թե ով է եղել Լենինի մեծ եղբայրը՝ Ալեքսանդրը:

Լենինը շատ էր սիրում իր եղբորը: Հիմա էլ բանտում նստած նրա մասին էր մտածում:

Լենինն առաքման բանտում կարճ մնաց:

Երկու օր անց նրան Կազանից ուղարկեցին Կոկուշկինո փոքրիկ գյուղը:

Այստեղ էլ, 1888 թվի գարնանը Լենինը նշեց իր ծննդյան օրը:





# ԲԱՆՏՈՒՄ

Լենինն իր ծննդյան օրն անց է կացրել նաև բանտի մենախցում:

Դա արդեն Պետերբուրգում էր, իր առաջին աքսորից մի քանի տարի անց: Ցարական ոստիկանները հետևեցին և նորից բանտարկեցին Լենինին:

Բանտում իսկույն նրան տեղավորեցին առանձին խցիկում: Բանտարկյալներն այդտեղ, անգամ կարճ զբոսանքի ժամանակ, մենակ էին լինում: Բանտի բակը բարձր պարիսպներ ունեցող վանդակների էր բաժանված: Յուրաքանչյուր բանտարկյալ զբոսնում էր իր վանդակում՝ վերակացուների հսկողության ներքո:

Վերակացուներն ամենից շատ մտահոգված էին, որ կալանավորները պատահաբար չհանդիպեն իրար միջանցքում, անգամ աչքի պոչով չնայեն, որպեսզի չիմանան, թե ընկերներից ով է բանտարկված կամ ով՝ ազատության մեջ:

Իսկ Լենինին շատ կարևոր էր այդ իմանալ:

Բայց ինչպե՞ս...

Բանտարկյալներին թույլ էին տալիս գրքեր ստանալ և կարդալ: Իհարկե, գրքերը ստուգվում էին ոստիկանական պաշտոնյաների կողմից: Ստուգում էին և եթե ոչինչ կասկածելի չէին հայտնաբերում, ուղարկում էին խցիկ:



Ահա դրանից էլ որոշեց օգտվել Լենինը: Շուտով, ազատության մեջ գտնվող Լենինի ընկերները նամակ ստացան:

Նամակը լուրջ էր և գործնական: Լենինը գրում էր, որ ցանկանում է բանտում գիտական աշխատանքով զբաղվել: Իսկ դրա համար նրան անհրաժեշտ են գրքեր, շատ գրքեր:

Նամակին կցված էր գրքերի ցուցակը:

Լենինը խնդրում էր ուղարկել բառարաններ, տեղեկագրքեր, օրենքների ժողովածուներ, գիտական աշխատություններ:

Գրքերի ցանկը շատ երկար էր: Ընկերները կարդում էին այդ հսկայական ցուցակը և ուրախանում, որ Լենինը նույնիսկ բանտում, պահպանում է իր կենսասիրությունը:

Բայց ի՞նչ է սա: Ցուցակում հանկարծ երևաց մի անսպասելի վերնագիր. Բրեմ՝ «Մանր կրծողներ»: Այդ բառերից հետո դրված էր մի փոքր հարցական նշան:

Տարօրինակ է. Լենինի ինչի՞ն է պետք այդ գիրքը:

Մի քանի տողից հետո գրված էր. Մայն Ռիդ-«Մինոգա»: Վերնագիրը անգլերեն էր, կողքին նորից փոքրիկ հարցական նշան:

Ոստիկաններն այս ցուցակում ոչինչ կասկածելի չէին տեսնում: Բանտարկյալը ցանկանում էր կարդալ Մայն Ռիդի հետաքրքիր գիրքը — ի՞նչ կա դրանում:



Նկ. ՎԱՋԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Բայց Լենինի ընկերներն իսկույն հասկացան, թե բանն ինչումն է:

Այն ժամանակ, ամեն մի հեղափոխական գործիչ իր կուսակցական գաղտնի մականունն ուներ: Ոնց որ մի երկրորդ անուն:

«Մինոգա» կամ «Ձուկ»— այդպես էին անվանում հեղափոխական Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայային: Ահա թե ում մասին էր հարցնում Լենինը, երբ ցուցակում մտցրել էր Մայն Ռիդի գրքի անունը:

Հեղափոխական մեկ ուրիշ գործիչի՝ Գլեբ Մաքսիմիլիանովիչ Կրժիժանովսկու կուսակցական մականունը «գետնասկյուռ» էր: Դժվար չէր հասկանալ, թե ինչու էր Լենինը հետաքրքրվում մանր կրծողների մասին գրքով:

Այս ձևով Լենինը կարողացավ հարցնել իր շատ ընկերների մասին:

Ընկերները պատասխանում էին նրան նույն կերպ:

Իսկ ոստիկաններն այդպես էլ ոչինչ չէին կասկածում:

Լենինը ուրիշ շատ հնարքներ էր գտնում ոստիկաններին խաբելու համար:

Ոչ բոլորն էին, որ դիմանում էին մենակյաց բանտարկության: Երբեմն կալանավորներն ընկնում էին հոռետեսության և հուսահատության գիրկը: Լենինն աշխատում էր հուսադրել իր ընկերներին:

Հսկիչներից գաղտնի, նա հարևան խցիկները երկտողեր էր ուղարկում: Իսկ երբ բանտարկյալները միջանցքում քաշքշուկ էին լսում, գիտեին, որ դա Լենինի համար ուղարկված գրքերի հերթական կամբյուղն է:

Իսկույն նրանց հոգին թեթևանում և հանդարտվում էր: Աշխատելու ցանկությունը համակում էր նաև մյուսներին:

Իսկ Լենինը ժամ անգամ չէր կորցնում: Աշխատում էր ամեն օր՝ առավոտից մինչև երեկո:

Երբեմն վերակացուն խցիկ էր նետում խոզանակ և մի կտոր մոմ: Դա նշանակում էր, որ հարկավոր է մաքրություն անել: Խցիկի հատակը ասֆալտապատ էր և նրա վրա մոմ էին քսում: Լենինը ջանասիրաբար տրորում էր հատակը մոմով՝ փայլեցնելու աստիճան, իսկ հետո նորից նստում աշխատելու:

Լենինը գիրք էր գրում: Նա այնպես էր տարվել դրանով, որ երազում անգամ գրքի որոշ հատվածներն էր տեսնում:

Լենինը այդ անգամ տասնչորս ամիս անցկացրեց բանտում: Հենց այդտեղ էլ, № 193 մենախցում նա տոնեց իր ծննդյան օրը: Այն ժամանակ լրանում էր նրա քսանվեց տարին: Նա դեռևս բոլորովին երիտասարդ էր:

(Շարունակելի)

# ԻԼՅԻՉԻ ԳՐԱԴԱՐԱԿՆԵՐԸ

ԼԱԶՐ ՍՅՈՒԶԱՆ

*1875 թվականին Ուլյանովների ընտանիքը տեղափոխվեց Սիմբիրսկ (այժմ Ուլյանովսկ): Այստեղ Վլադիմիր Իլյիչի հայրը՝ Իլյա Նիկոլաևիչը նշանակվեց դպրոցի դիրեկտոր:*

*1879 թվականին Վոլոդյա Ուլյանովը ընդունվեց Սիմբիրսկի դասական գիմնազիան:*

Դպրոցական առաջին տարիներին Վոլոդյան ապրում էր միևնույն սենյակում իր ավագ եղբոր՝ Սաշայի հետ: Իսկ երբ փոխադրվեց 3-րդ դասարան, մայրը նրան տեղավորեց աստիճանների հարթակի վրա, առանձին սենյակում՝ Սաշայի սենյակի կողքին: Սենյակում ոչ մի զարդարանքներ և ավելորդ առարկաներ չկային, որ շեղեին նրա ուշադրությունը: Միայն քնելու և պարապելու անհրաժեշտ առարկաներն էին: Աջից՝ սեղանի վրա, պատից կախված էին գրադարակներ, որոնց վրա Վոլոդյան դնում էր «սեղանի գրքերն» ու դասագրքերը: Գրադարակները շատ հասարակ էին ու կարճ. դրանք երկու թելերից կախված տախտակներ էին:

Իսկ ինչո՞ւ էին Վոլոդյայի համար այդպիսի գրադարակներ պատրաստել: Որովհետև ճիշտ այդպիսի տախտակներ կային և նրա ավագ եղբոր՝ Սաշայի սենյակում: Իսկ Վոլոդյան շատ էր սիրում Սաշային և միշտ ու ամեն ինչում ընդօրինակում էր նրան: Ինչի մասին էլ որ հարցնում էին Վոլոդյային՝ շիլան յուղով է ուզում, թե՞ կաթով, ի՞նչ է ուզում խաղալ՝ պահմտոցի՞, թե՞ կրոկետ, նա պատասխանում էր. «Ինչ որ Սաշան»:

Պարապելու ժամերը նշանակված էր ըստ իր կազմած ռեժիմի: Նա միշտ էլ ժամանակ էր գտնում և՛ դասերը պատրաստելու, և՛ ընթերցանության, և՛ խաղալու համար:

Վոլոդյայի գրադարակները աչքի էին ընկնում կարգապահությամբ: Յուրաքանչյուր գիրք նա կազմում էր սպիտակ թղթով և դնում իր որոշակի տեղը: Եթե դասերը պատրաստելու կամ ընթերցանության համար նա որևէ գիրք էր վերցնում, վերջացնելուց հետո նորից դնում էր նույն տեղը:

Ռեժիմի ամենօրյա և ճիշտ կատարումը, դասացուցակին խիստ հետևելը, սենյակի, գրասեղանի և գրադարակի դասավորությունը Վոլոդյայի մոտ դաստիարակում էր ինքնավստահություն, համառություն և կամք: Այս հատկությունները, ինչպես նաև գերազանց ընդունակությունները, օգնեցին, և Վոլոդյան գիմնազիան ավարտեց ոսկե մեդալով:

Երբ Վոլոդյան ավարտական քննություններ էր հանձնում, մեծ դժբախտություն պատահեց. թագավորի դեմ մահափորձ կատարելու համար Վոլոդյայի ավագ եղբայրը՝ Սաշա Ուլյանովը դատապարտվեց մահվան: Սկսեցին հետապնդել Ուլյանովների ընտանիքին: Նրանք ստիպված թողեցին Սիմբիրսկը, տունը ծախեցին և տեղափոխվեցին Կազան:

Վլադիմիր Ուլյանովը ընդունվեց Կազանի համալսարանը: Նա իր գրադարակները իր հետ տարավ Կազան: Ու թեև արդեն չափահաս ուսանող էր, բայց գրադարակները դարձյալ օգնում էին նրան սովորելու:

Գրադարակների գրքերը գնալով ավելանում էին: Գրքերը, ինչպես նաև շրջապատի կյանքը, օգնում էին Վոլոդյային ավելի մոտիկից իմանալու ժողովրդի աղքատության, ցարիզմի ճնշման մասին... Նա սկսեց մտածել՝ ինչպես օգնել ժողովրդին, ինչպես գտնել ազատագրման ուղիներ: Համալսարանում ուսումնական ծրագրերից բացի, Վոլոդյան սկսեց ուսումնասիրել նաև գիտությունը հեղափոխության մասին: Ցարիզմի ճնշումը թափանցել էր նաև համալսարան: Ուսանողներին արգելում էին մասնակցել խմբակներին, թույլ չէին տալիս ստեղծելու իրենց գրադարանը և նույնիսկ իրենց ճաշարանը: Ուսանողներն էլ հուզվում էին, բողոքում... Ուսանողական հուզումներին մասնակցելու համար Վոլոդյային ձերբակալեցին, հեռացրին Կազանի համալսարանից և աքսորեցին Կոկուշկինո գյուղը:

Աքսորում նա շարունակում էր պատրաստվել քննություններին: Առաջվա նման նրա գրասեղանի վերևից կախված էին գրադարակները «ձեռքի տակի գրքերի համար»:

Ուլյանովների ընտանիքը Կազանից տեղափոխվեց Սամարա (այժմ Կույբիշև): Վոլոդյան ինքնուրույն, առանց ուսուցիչների օգնության, ուսումնասիրում էր համալսարանի բոլոր առարկաները և, չկորցնելով ոչ մի տարի,





գերազանց հանձնեց քննությունները ու ավարտեց համալսարանը:

Լենինը Պետերբուրգում: Այստեղ նա ստեղծում է «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը»: Հեղափոխական աշխատանքներ ծավալելու համար Լենինին ձերբակալում են և աքսորում: Նա ապրում է Շուշենսկոյե գյուղում, գյուղական մի հասարակ խրճիթում: Բայց և սիբիրյան տաղտուկ մշուշում Լենինը իր համար ըստեղծում է աշխատանքի հարմարավետ անկյուն: Գրքերի համար նա պատրաստում է այնպիսի գըրադարակներ, ինչպիսին կար Կոկուշկինոյում: Շուշենսկոյեում Լենինը գրում է «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» գիրքը, բազմաթիվ հոդվածներ և մտածում է կուսակցություն ըստեղծելու պլան, որը իրականացնում է հետագայում:

Թագավորը այստեղ էլ Լենինին հանգիստ չթողեց, ոստիկանությունը խուզարկեց նրա բնակարանը և ամբողջ գրքերը տակնուվրա արավ: Գրադարակները դատարկվեցին...

Պետերբուրգից Լենինը մեկնեց արտասահման, եղավ տարբեր երկըրներում և քաղաքներում... և ուր էլ գնաց, ստեղծեց աշխատանքի իր հարմարավետ անկյունը, իհարկե գրադարակներով:

1914 թվականի ամռանը սկըսվեց արյունահեղ համաշխարհային պատերազմը: Պատերազմը թափանցեց և Ռուսաստան: Ավստրիական ոստիկանությունը ձերբակալեց Լենինին: Երբ նրան ազատեցին բանտից, Լենինը գընաց փոքրիկ, չեզոք երկիր Շվեյցարիա և այնտեղից կոչ արեց պայքարել պատերազմի դեմ:

Վերջապես թագավորը տապալվեց, Լենինը վերադարձավ Ռուսաստան: Պատերազմը շարունակվում էր: Լենինը բացատրում էր ժողովրդին, որ պետք է վերջացնել պատերազմը, հողը տալ գյուղացիներին, գործարանները՝ բանվորներին: Նորաստեղծ կառավարությունը ուզեց ձերբակալել Լենինին, բայց նա թաքնվեց Ռազլիվ լճի ափերի մոտ: Լենինը այստեղ ևս իր համար ստեղծեց «աշխատասենյակ» երկու կոճղերից. մեկն օգտագործում էր որպես սեղան, իսկ մյուսը՝ աթոռ: Այդ «կանաչ աշխատասենյակում» Լենինը գրում է «Պետություն և հեղափոխություն» գիրքը:

Հեղափոխությունից հետո, երբ Լենինը բանվորների և գյուղացիների կառավարություն ստեղծեց և սկսեց աշխատել Կրեմլում, նա դարձյալ իր համար շատ հարմարավետ գրասեղան պատրաստեց: Իսկ այն գրքերի համար, որոնք Լենինը միշտ ուզում էր ունենալ ձեռքի տակ, պատվիրեց հետաքըրքիր գրադարակներ: Վլադիմիր Իլյիչն ինքը գծեց այդ գրադարակների նախագիծը, իսկ ծանոթ հյուսնը, որ շատ էր սիրում Իլյիչին, պատրաստեց: Գրադարակներին դրված էին տեղեկագըրեր և բառարաններ, ՌՍՖՍՀ-ի էլեկտրիֆիկացիայի պլանը և ուրիշ շատ գրքեր...

Գրադարակները շատ հարմարավետ էին. նրանք պտտվում էին: Այդ գրադարակները հիմա էլ պահպանվում են Կրեմլում՝ Լենինի աշխատասենյակում: Ճիշտ այդպիսի աշխատասենյակ պատրաստել են նաև Լենինի մոսկովյան թանգարանում: Այնտեղ էլ կան այդ պտտվող գրադարակները: Դուք բոլորդ, եթե գնաք Մոսկվա, կարող եք տեսնել և, եթե թույլ տան, կարող եք նաև պտտել: Շատ հարմար գրադարակներ են. պտտում ես և... ձեռքիդ տակ է անհրաժեշտ գիրքը:

***

Իսկ որտե՞ղ են Վոլոդյա Ուլյանովի առաջին գրադարակները, մի՞թե նրանք կորել են: Ո՛չ: Նըրանք հիմա էլ կախված են Ուլյանովսկում, Լենինի տուն-թանգարանում, Վոլոդյայի սենյակում... Սաշայի սենյակում...

Գրադարակներ կան և Կազանում: Ամեն օր այդ գրադարակները տեսնում են տասնյակ մարդիկ, դրանց թվում նաև շատ դըպրոցականներ: Երեխաները նայում են գրադարակներին, կարգ ու կանոնով դասավորված սեղանին, սրածայր մատիտներին և մտածում, թե ինչպես կարգապահությունն ու ճշտապահությունը օգնեցին Վոլոդյային սովորել և պայքարել հանուն ժողովրդի երջանկության:

Թարգմ. Կ. ՍԱՐՎԱԶՅԱՆԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ







# ԹՎԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐԸ

*ԳՐԻԳՈՐ ՔԵՇԻՇՅԱՆ*

Շատերն էին Շուշանիկին ուրախություն պատճառում: Առաջինը՝ հայրիկը, որ հաճախ նվերներ էր բերում և գովում նրան դպրոցից բերած ամեն մի «հինգի» համար: Ապա՝ մայրիկը, որ ժամանակին եփում էր ճաշը, հագուստները արդուկում, պահում պատրաստ վիճակում: Այնուհետև մեծ քույրիկն ու եղբայրը, որոնք ամեն բան պիջում էին նրան:

Շուշանիկին ուրախություն պատճառողներից էր նաև Հրանուշ հորաքույրը: Չգիտես ինչ մի հոսանք հորաքրոջից անցնում էր դեպի Շուշանիկը, և ուրախությունից նրա փոքրիկ սիրտը սեղմվում էր տարօրինակ կգացումով: Շուշանիկը բացատրել կամ հասկանալ չէր կարող, բայց հորաքրոջ տուն գնալը լավագույն նվերներից մեկն էր, որ երբեմն մայրը պարգևում էր նրան:

Հորաքույրն էլ, ինչպես իրենց բարեկամներից շատերը, սիրում էր իրեն, գրկում ու համբուրում, բայց նրա գիրկն ու նրա համբույրը ուրիշ էր: Հորաքույրն էլ, ինչպես իրենց բարեկամները, գործածում էր նույն բառերը, բայց բառերը նրա բերանում ուրիշ կերպ էին արտասանվում և անպայման ուրիշ իմաստ էին ստանում: Կարծես բառերը նույնիսկ գույն էին ունենում: Հաճելի մի գույն, որ ո՛չ կարմիր էր, ո՛չ կանաչ, ո՛չ դեղին էր, ո՛չ կապույտ, բայց իր մեջ այդ բոլոր գույներից ուներ: Հետո, այդ բառերը կարծես տաք էին, ու ինքը ջերմություն էր զգում իր մեջ, այտերը կարծես վառվում էին:

Կարծես մի տեսակ վախով նա զանգ էր տալիս կիրակի օրերին, երբ գիտեր, որ հորաքույրը չէր աշխատելու:

— Հորաքո՛ւյր, գա՞մ:

— Արի՛, Շուշանիկ:

Մնացածը պարզ էր: Մայրիկը պիտի ասեր, որ զգույշ լինի անցումներում, քույրիկը՝ ինչ-որ ուրիշ բան: Նա ուշադիր լսում էր, կատարում նրանց ամեն-ները, բայց արդեն վազում էր, վազում դեպի հորաքույրը:

Եվ նրա տան զանգը կարծես տարբեր էր մյուս զանգերից: Նրա զանգը փափուկ էր հնչում, հաճելի, ճիշտ հորաքրոջ ձայնի նման.

— Եկա՞ր, Շուշանի՛կ:

Հետո նրանք նստում էին հորաքրոջ լայն բազմոցի վրա և խոսում ամեն ինչի մասին: Նա հարցեր էր տալիս տան, դպրոցի, իր ընկերների, իր ուսուցիչների ամեն ինչի և բոլորի մասին: Եվ նա ամեն ինչ գիտեր: Դեռ չէր պատահել, որ նա իր հարցին չպատասխաներ: Իսկ, ա՛յ, քույրիկը հաճախ ժամանակ չէր ունենում, ինչպես ժամանակ չէին ունենում հայրիկն ու մայրիկը: Հորաքույրը միշտ ժամանակ ուներ և գիտեր ամեն ինչի պատասխանը:

Սակայն, այդ կիրակի, առաջին անգամ, հորաքրոջ ձայնը ուրիշ տեսակ հնչեց.

— Արի՛, Շուշանի՛կ:

Կարծես ինչ-որ դժգոհություն կար նրա ձայնի մեջ: Մինչդեռ առաջին անգամ Շուշանիկը հորաքրոջ մոտ էր գնում ոչ միայն նրան տեսնելու, այլև ուրիշ կարևոր գործով:

Զարմանալի կերպով դռան զանգն էլ ուրիշ տեսակ հնչեց:

— Եկա՞ր, Շուշանի՛կ,— ասաց հորաքույրը և Շուշանիկը հասկացավ, որ այդ օրը նման չէր ուրիշ օրերի:

Նա նստեց լայն բազմոցին, պատասխանեց հորաքրոջ հարցերին, պատմեց անցնող շաբաթվա բոլոր մեծ իրադարձությունների մասին ու հանկարծ.

— Հորաքո՛ւյր,— ասաց ու իր գեղեցիկ աչքերի հայացքով ներքևից վերև նայեց:

— Ի՞նչ կա, Շուշանի՛կ:

— Թվաբանության խնդիրս,— ասաց Շուշանիկը:

— Ի՞նչ է պատահել քո թվաբանության խնդրին,— հարցրեց հորաքույրը:

— Շատ դժվար է:

— Եվ ի՞նչ:

— Բերեցի, որ... բերեցի, որ դու լուծես,— ասաց

Շուշանիկը և անմիջապես էլ հասկացավ, որ մեծ, շատ մեծ սխալ թույլ տվեց: Նա հանկարծ հասկացավ, որ միանգամից փոխվեցին իր և հորաքրոջ հարաբերությունները:

Բայց արդեն մի անգամ ճանապարհ էր ընկել, և այլևս ետ դառնալ հնարավոր չէր:

— Շատ դժվար է,— կրկնեց նա:

— Եվ դու չե՞ս կարողանում լուծել,— հարցրեց կարմնացած հորաքույրը:

Նա այնպես կարմնացավ և այնպես հարցրեց, որ Շուշանիկը իրեն շատ վատ ու ընկճված զգաց: Եվ չպատասխանեց: Գլուխը խոնարհեց:

— Կարդա՛ խնդիրը,— ասաց հորաքույրը:

Շուշանիկը թույլ ու անկամ մոտեցավ, բացեց գիրքը և կարդաց:

Երրորդ դասարանի համար բավականին դժվար ու բարդ էր խնդիրը:

— Իսկապես որ դժվար է,— ասաց հորաքույրը,— դժվար է, բայց ոչ քեզ համար:

Շուշանիկը նորից նայեց երկար թարթիչների արանքից:

— Այդ խնդիրը քեզ համար դժվար չէ,— հորաքույրը, առանց լուրջ կարևորություն տալու Շուշանիկին, շարունակեց տունը կարգի բերել,— դու անշուշտ կարող ես լուծել:



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

— Կարո՞ղ եմ:— Շուշանիկը այնպիսի ձայնով հարցրեց, որ հնարավոր չէր իմանալ՝ նա հարցնո՞ւմ էր, թե՞ հաստատում:

Հորաքույրը ուշադրություն չդարձրեց նրա շեշտին:

— Ես համոզված եմ, որ դու կարող ես, բայց որովհետև շտապում էիր ինձ մոտ գալ, ուշադիր չկարդացիր, որպեսզի այստեղ լուծես,— ասաց նա,— այդպե՞ս է:

Շուշանիկը չպատասխանեց: Շարունակելով գլուխը ցած պահել, նա մատներով խաղում էր գրքի թերթերի հետ: Ախր իրենց հարևան Տիգրանիկն էլ չէր կարողացել լուծել, Աշոտիկն ու Համմիկն էլ:

Հորաքույրը շարունակեց.

— Դու ուշադիր չես կարդացել: Ապա՛ մի երկու անգամ ուշադիր կարդա և կկարողանաս:

Շուշանիկը գլուխը խոնարհեց գրքի վրա և խորասուզվեց խնդրի մեջ:

Հորաքույրը անուշադիր ձևանալով, հետևում էր նրան: Նա տեսավ, թե ինչպես լարվեցին աղջկա հոնքերը, ինչպես սկսեց թղթի վրա թվեր գրել ու գիծ քաշել: Շարունակելով տունը կարգի բերել, նա անընդհատ հայացքի տակ էր պահում նրան: Քիչ հետո փոքրիկ աղջկա դեմքի գծերը բացվեցին, ճակատը հանգստացավ, հոնքերը իրենց կամարը կապեցին:

Շուշանիկը նոր թղթի վրա գրեց ամբողջ խնդրի լուծումը, բոլոր հարցերի պատասխանները ու ներկայացավ հորաքրոջը:

— Լուծեցի,— ասաց նա:

Հորաքույրը ստուգեց:

— Ճիշտ է,— ասաց նա,— ես այդպես էլ գիտեի, դժվար խնդիր էր, բայց վստահ էի, որ քեզ համար շատ դժվար խնդիրներ չկան:

— Դու որտեղի՞ց գիտեիր,— հարցրեց Շուշանիկը:— Դու բոլոր խնդիրները գիտե՞ս:

— Ես բոլոր խնդիրները չգիտեմ,— ասաց հորաքույրը,— բայց ես քեզ գիտեմ: Եվ գիտեմ, որ դու կարող ես լուծել: Միայն թե, պետք է ուշադիր կարդաս:

Շուշանիկը չպատասխանեց: Նա նստեց բազմոցին ու նայեց հորաքրոջը և նույն ժամանակ զգաց, որ ոչ մի բան չէր պատահել: Հորաքրոջ ձայնը առաջվա պես փափուկ էր, ուրիշ օրերի պես նրանք քիչ հետո կսկսեն խոսել, նա հարցեր կտա իրեն, իսկ ինքն էլ՝ հորաքրոջը, և աշխարհը նորից կլցվի լույսով, երաժշտությամբ, ջերմությամբ:

Նա վստահ էր, որ նույնիսկ եթե վեր կենա և նորից դռան կանգը տա, այդ կանգը հնչելու է մյուս օրերի նման քաղցր, փափուկ, մի տեսակ տաք ու հաճելի:

Հորաքույրը եկավ ու նստեց մոտը.

— Դե՛, Շուշանի՛կ, պատմի՛ր, ի՞նչ կա դպրոցում, ի՞նչ ես ստացել այս շաբաթ:

Շուշանիկը փարվեց հորաքրոջը: Այնքան լավ էր այն հոսանքը, որ նրանից դեպի իրեն էր գալիս, այնպես հաճելի էր այդ հոսանքի մեջ լող տալը:

— Հորաքո՛ւյր,— ասաց նա հանկարծ,— ես քեզ սիրում եմ:— Նա գլուխը սեղմեց հորաքրոջը, աչքերը փակեց և երանության մեջ զգաց իրեն գրկող հորաքրոջ թևը և նրա շրթները՝ իր փակ կոպերի վրա:



# ՈՒՐԱԽ ԵՂԵՎՆԻՆ

ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ

Նոր տարվա եռուզեռը անցավ, այցելությունները դադարեցին: Ոչինչ չփոխվեց, չնայած մի ամբողջ տարով մեծացանք՝ ես, հայրիկը, մայրիկը: Դրսում նորից ու նորից ձյուն եկավ, դիզվեց բակում, և ես տանը՝ պատուհանի գոգին նստած, չիմանալով ինչ անել, նորից ու նորից հաշվեցի ծառերը, էլեկտրալարերին նստոտած ճնճղուկներին, խանութ գնացողների ոտնահետքերը: Հետո մայրիկին խնդրեցի ու բակ իջա, խոստացա ձյան մեջ չթավալվել ու ձյուն չուտել:

Հենց շենքի մոտ հանդիպեցի մի տղայի: Նա ոտքերը լայն բացած կանգնել է բակի կենտրոնում, գլուխը ետ է գցել ու նայում է երկնքին, որտեղից ճերմակ ձյուն է թափվում: Ես որովհետև ավելի խելոք բան չեմ կարող անել, ձյան վրա գրում եմ իմ անունը՝ Վահրամ, բայց պարզվում է, որ նա ինձնից առաջ պատի տակ Լիպո է գրել: Ես պատին նշան եմ բռնում ու ձնագնդին ձեռքիս քայլում եմ ճիշտ Չարլի Չապլինի նման, իբր Լիպո անունով մեկին չեմ էլ տեսել: Տղան քրքջում է: Դիմացի շենքի պատշգամբից ճաղատ գլխով մի մարդ տկտկացնում է ճակատին, իբր ես խելք չունեմ: Իմ տրամադրությունը իսկույն փչանում է: Ինչու են այդ մեծահասակները երևակայում իրենց:

— Եկ նրա համար պատիժ հնարենք,— ասում է Լիպոն,— չար մարդ է:

— Թող նրա քիթը երկարի, ինչպես հեքիաթում,— ասում եմ ես:

— Ճիշտ է,— քրքջում է Լիպոն:

— Մեկն էլ դու ասա:

— Թող հարյուր մեղու միանգամից կծեն նրա գլուխը:

— Ո՜չ,— զվարճանում եմ ես, հետո մի պահ մըտածում եմ,— նա ո՞վ գիտե քանի տարեկան է, մենք նրանից երկար կապրենք:

— Մենք միշտ էլ կապրենք,— ասում է Լիպոն:

— Մենք կլինենք, ինքը չի լինի, մեղք է:

— Հա՜,— համաձայնվում է Լիպոն, ու մենք ճաղատին ներում ենք:

— Ինչո՞ւ քեզ մինչև հիմա չեմ տեսել,— հարցընում է Լիպոն:

— Մենք մեր բնակարանը մի ամիս առաջ ենք փոխել, առաջ այստեղ չէինք ապրում: Ես քեզ պատուհանից տեսել եմ երկու պստիկների հետ:

— Քույրիկներս են,— ասում է Լիպոն,— մանկապարտեզից ես եմ տանում տուն, մայրիկը ուշ է գալիս աշխատանքից:

— Քեզ լսո՞ւմ են,— հարցնում եմ ես:

— Հապա ինչպես:

— Ես էլ կուզենայի քույրիկ ունենալ կամ եղբայր:

— Գնանք մեր տունը ցույց տամ,— ասում է Լիպոն:

Բակի ծառերի տակով անցնելիս, մի ճնճղուկ թըռչում է ու ձյունը թափվում է գլխիս: Լիպոյենց շենքն այնքան էլ հեռու չէ: Շենքի մոտ ընկած է մի հրաշալի կանաչ եղնի:

— Տեսնես ո՞վ է գցել,— ասում է Լիպոն,— մեր տոնածառը, չեմ էլ հասկանում, ինչի՞ց է պատրաստված. ո՛չ կարգին փշեր ունի, ո՛չ խեժի հոտ, խաղալիքներն էլ ճկույթիս կեսի չափ են:

Ես ուզում եմ հնարել, որ մեծ ու գեղեցիկ եղնի ունեի, բայց հիշում եմ, որ ստել չի կարելի:

— Ես բոլորովին չունեի տոնածառ: Ամեն տեղ հերթ էր, հայրիկս զբաղված է, ժամանակ չունի, մայրիկս էլ էր զբաղված, խմորեղեն էր պատրաստում:

Ես նորից տխրում եմ: Առանց տոնածառի էլ ի՞նչ Նոր տարի: Իսկ տանը դեռ ասացին, որ ես մեծ տղա եմ ու տոնածառ չունենալը ողբերգություն չէ:

— Լիպո՛, ես ափսոսում եմ այս եղևնուն, իսկ դո՞ւ:

— Ես էլ եմ ափսոսում:

— Գոնե բերեին ու տնկեին ձյան մեջ,— գլուխս եմ օրորում ես,— եղևնին իրեն վիրավորված չէր ըզգա:

— Ի՞նչ անենք,— հարցնում է Լիպոն:

Մտածում եմ:

— Եկ տոնածառ սարքենք:

Ու վախենում եմ, որ նա չի համաձայնվի:

— Սարքենք,— ասում է Լիպոն:

Սկզբում Ձմեռ պապի ենք շինում: Աչքերի փոխարեն դնում ենք քարածուխի կտորներ, բերանին՝ ոլորած թղթից ծխախոտ: Ա՞յ թե Ձմեռ պապի է, հա՞: Լիպոն գլուխկոնծի է տալիս օդի մեջ ու վայր է ընկնում: Ես ուզում եմ ցույց տալ, որ իրենից ետ չեմ մնում: Կանգնում եմ ձեռքերի վրա: Գետինը սառն է:

— Կրկեսում եղե՞լ ես,— հարցնում է Լիպոն:

— Հայրիկս ասում է՝ կրկեսը անլուրջ բան է, ասում է՝ կենդանիները մեղք են, տանջվում են, ստիպված են վազել, ցատկել և էլի հազար ու մի բան:

— Իսկ դո՞ւ:

— Չգիտեմ, —ասում եմ ես,— ինձ թվում է նրանք ուրախ են, որ գլուխկոնծի տալ ու պարել գիտեն, ուրախ են, որ այդքան մարդ է իրենց նայում:

— Երևի երկուսդ էլ ճիշտ եք,— մեծի պես ասում է Լիպոն,— բայց այդպես ինչպե՞ս կլինի:

— Այդպես, ինչպես, այնպես, նմանապես,— ասում եմ ես, ու մենք քրքջում ենք, փորներս բռնած թավալվում ենք ձյան մեջ:

— Ձեռքերս սառել են:

— Քո ձեռնոցները իմից տաք են:

— Խաղալիք չկա,— հիշում եմ ես,— միայն մի փոքրիկ Բուրատինո կա գրպանումս:

— Բավական է,— ասում է Լիպոն: Ու գրպանից հանում է կոճ, լուցկու տուփի պիտակներ, կոնֆետի ոսկեզօծ թղթեր, թենիսի գնդակ:



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Իսկական Թոմ Սոյեր:

— Կոնֆետի թղթեր ես էլ ունեի, մայրիկս թափեց:

— Ափսո՜ս,— հառաչում է Լիպոն:

Ցուրտ է, ցատկոտելով ու ձեռքներս շըփելով տոնածառը զարդարում ենք: Բուրատինոն թելով կախում ենք վերևի ճյուղից, լուցկու պիտակները շարում ենք ճյուղերի ծայրերին, իսկ ոսկեզօծ թղթերով փաթաթված ձյունե գնդիկները մի կերպ հարմարեցնում ենք այնպես, որ չընկնեն: Վե՛րջ: Պատրաստ է:

— Ուռա՜,— կանչում է Լիպոն,— վազեմ քույրիկներիս բերեմ:

Մինչև նրա գալը շենքից էլի երեխաներ են իջնում ցած, պտտվում են տոնածառի շուրջը:

— Խաղալիքներ չկան,— ասում է Լիպոյի քույրիկը:

— Շատ էլ սիրուն է,— ասում է մյուսը ու կամաց մատը սահեցնում է ճյուղերի վրայով: Բոլոր երեխաներն էլ ուզում են ձեռք տալ եղևնուն: Իսկ եղևնին կանգնել է ձյունե թմբի վրա ուրախացած, ճյուղերը վեր պարզել ու կարծես ժպտում է:



## ՁՅՈՒՆ Է ԳԱԼԻՍ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Ամպ են հագել սար ու ձոր,
Ձյուն է գալիս ամեն օր,
Մանրիկ-մանրիկ թափվում վար,
Տակն է առնում հանդ ու սար,
Տակն է առնում տուն ու բակ,
Դառնում բլուր պատի տակ:
Բայց թե՛ ձմեռ, թե՛ գարուն,
Միշտ խաղալ ենք մենք սիրում,
Սիրում դարբաս ու գնդակ,
Ամուր չմուշկ ու սահնակ,
Ու թե նայենք այդ ձյանը,
Միշտ կմնանք մենք տանը:



# ԱՌԱՋԻՆ ԲԱՐԵԿԱՄԸ

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Ծառերը դեռ չէին հասցրել լրիվ տերևաթափվել, երբ եկավ առաջին ձյունը: Ձյունը թափվում էր ամբողջ գիշեր, և լուսադեմին բակը ծայրեծայր մնացել էր ձյան հաստ շերտի տակ: Առավոտյան այն դեռևս մաքուր էր ու թեթև, բայց մինչև երեկո տեղ-տեղ տրորվեց, սևացավ, իսկ բակի մի անկյունում գոյացավ երկար սառցաշերտ: Արտակը մենակ էր բակում, սահում էր սառցաշերտի վրա, երբ նկատեց քոթոթին: Քոթոթը փոքր էր, մոտեցել, նստել էր ձյան վրա, սառցաշերտի մոտ:

— Մի կո՛ղմ գնա՛,— ասաց Արտակը,— դու խանգարում ես ինձ:

Բայց քոթոթը ոչ մի քայլ չարեց: Նա նստել էր ձյան վրա և Արտակին էր նայում: Իսկ Արտակը նորից սահեց: Նա հրաշալի էր սահում: Նա սահեց մի անգամ, երկու անգամ, քանի անգամ:

— Խնդրում եմ,— ասաց Արտակը,— շատ եմ խնդրում, ինձ մո՛տ արի:

Բայց քոթոթը վիրավորվել էր: Նա շատ փոքր էր, հպարտ էր և շատ էր նեղացել տղայից:

— Խնդրում եմ,—կրկնեց Արտակը,— ի՞նչ կլինի, խաղա՛ ինձ հետ:

Քոթոթը վազեց Արտակի ետևից: Նա թավամազ էր ու կլոր, ոտքերը կարճ էին, իսկ ձյունը խորն էր. նա հազիվ էր վազում: Բայց նա շատ էր ուզում վազել տղայի ետևից: Նա միշտ ցանկացել էր վազել որևէ տղայի ետևից: Նա մինչև կուրծքը խրվում էր ձյան մեջ, գլուխկոնծի տալիս և չէր նեղանում, երբ տղան ծիծաղում էր իր վրա:

Արտակը երբեք այդքան երկար չէր խաղացել: Նրա ոտքերը սառեցին, նա հոգնեց և ցանկացավ տուն գնալ:

— Ցտեսություն,—ասաց նա,— ես տուն եմ գնում:

Քոթոթը գնաց նրա ետևից:

Քոթոթը գիտեր, որ նա տուն է գնում: Նա արդեն հասկացել էր, որ տղան տուն է գնում, և տխրել էր: Նա պտտվեց տղայի շուրջը, քսվեց նրա ոտքերին, իսկ երբ տղան գնաց, վազեց նրա ետևից:

Քոթոթի համար դժվար էր աստիճաններով բարձրանալ, և նա բարձրանում էր սայթաքելով ու ընկնելով: Նրանք բարձրացան հինգերորդ հարկ: Արտակը իրեն ներս գցեց և դուռը շխկացրեց քոթոթի քթի առաջ: Նա առանց վերարկուն հանելու կանգնեց նախասենյակում, մեջքով հենված դռանը:



— Պա՛պ,— շնչակտուր կանչեց նա:

Հայրը թերթը ձեռքին դուրս եկավ սենյակից:

— Պա՛պ,— ասաց Արտակը,— նա այնտեղ է, դռան ետևում:

— Ո՞վ,— հարցրեց հայրը:

— Քոթոթը:

— Քոթո՞թը: Իսկ նա ի՞նչ է անում դռան ետևում:

— Չգիտեմ: Նա շատ փոքր է:

— Ձմռանը փոքր քոթոթներ չեն լինում,— ասաց հայրը:

Հայրը կիսաբաց արեց դուռն ու կարմացավ: Նա կարծում էր, որ ձմռանը փոքր քոթոթներ չեն լինում:

— Սրան չի կարելի տուն թողնել,— ասաց նա:

— Ինչո՞ւ,— հարցրեց Արտակը:

Հայրն ավելի լայն բացեց դուռն ու ավելի լավ դիտեց քոթոթին: Քոթոթը փոքր էր: Իր ողջ կյանքում նա ձմռանը այդքան փոքր քոթոթ չէր տեսել: Նա դուռը ծածկեց:

— Գիտե՞ս ինչ,— ասաց հայրը,— նա երևի քաղցած է:

— Թող ներս գա,— ասաց Արտակը:

— Նրան բակ տար ու հաց տուր,— ասաց հայրը:— Հենց որ կշտացավ՝ տուն կգնա:

— Իսկ նա տուն ունի՞:

— Իհարկե,—ասաց հայրը:

Տղան պահարանից հաց հանեց: Նա դուռը կիսաբաց արեց և տեսավ, որ քոթոթը պառկել է:

— Պա՛պ,—ասաց Արտակը,— իսկ եթե քոթոթը ջո՞ւր ուզի:

— Դու էլ ջո՛ւր տուր,— սենյակից ասաց հայրը:

— Բակում ջուր չկա,—ասաց Արտակը,— ի՞նչ կլինի, եթե նրան ներս բերեմ:

— Մայրիկը կգա տուն և կը-

բարկանա: Նրան բակ տար:

— Իսկ դու չե՞ս բարկանում:

— Ե՞ս,— հայրը լռեց ու չըպատասխանեց:— Ավելի լավ է բակ տար,— ասաց նա,— շները չեն սիրում բնակարանում ապրել:

— Իսկ եթե նա ծարա՞վ է:

— Նա ձյուն կուտի:

— Իսկ ինձ կարելի՞ է ձյուն ուտել,— հարցրեց Արտակը:

— Քեզ չի կարելի,— ասաց հայրը:

Հացի կտորը ձեռքին, Արտակը աստիճանավանդակ դուրս եկավ: Քոթոթը սպասում էր նըրան: Նրանք ցած իջան, իջնելիս քոթոթի դունչը շարունակ քսվում էր ցածի աստիճանին:

— Կե՛ր,— Արտակը ձյան վրա հացի մի պատառ գցեց:

Քոթոթը շատ էր քաղցած և սիրում էր տղաների ձեռքից հաց վերցնել. նա անմիջապես կուլ տվեց պատառը: Հետո նա ուտում էր Արտակի ձեռքից և կերավ ամբողջ հացը: Արտակն ուրախ էր, որ քոթոթը հացը իր ձեռքից կերավ:

— Հիմա դու կգնա՞ս տուն,— հարցրեց Արտակը:

Քոթոթը երջանիկ էր, որ տղան խոսում էր իր հետ: Նա վազեց, պտտվեց Արտակի շուրջը, քըսվեց նրա ոտքերին, հաչեց, ու-



կում էր ասել, որ երբեք նրանից չի հեռանա:

Երբ Արտակը սահում էր սառցաշերտի վրա, քոթոթը վազում էր նրա կողքից: Նա գլորվում էր ձյան մեջ, սառեցնում դունչը, թաթերը, բայց երջանիկ էր: Նա միայն այս տղայի ետևից էր ուզում վազել, միայն նրա ձեռքից էր ուզում հաց վերցնել, միայն նրան էր սիրում:

Արտակի ոտքերն էլ սառեցին: Մութն ընկնում էր: Քոթոթին թըվաց, որ տղան տխրել է: Նրան ուրախացնելու համար քոթոթը կլանչեց, թավալ տվեց ձյան մեջ, փաթաթվեց ոտքերին:

— Ես պիտի գնամ,— ասաց Արտակը:

Քոթոթին թվաց, որ տղան մի շատ կարևոր բան է ասում: Նա նստեց սառած ու ցավող թաթերի վրա և տղային նայեց:

— Հասկանո՞ւմ ես,— ասաց Արտակը,— քեզ չի կարելի տուն տանել:

Քոթոթն ամեն ինչ հասկանում էր:

— Ես շատ կուզենայի քեզ տուն տանել:

Քոթոթը հավատում էր տղային:

— Իսկ դու տուն կգնա՞ս,— հարցրեց Արտակը:

Քոթոթը շատ հպարտ էր: Նա չասաց, որ ինքը տուն չունի: Նա չէր ուզում նաև վշտացնել իր բարեկամին:

— Եթե ուզում ես, վաղը նորից արի,— ասաց Արտակը:

Քոթոթը չպատասխանեց:

— Ես գնում եմ,— ասաց Արտակը:

Քոթոթը գիտեր, որ նա գնալու է: Միշտ էլ նրա բարեկամները գնացել էին և այլևս երբեք նըրանց չէր տեսել:

— Չգաս իմ ետևից,— ասաց Արտակը,— շատ եմ խնդրում, չըգաս իմ ետևից: Միևնույն է, քեզ տուն չեն թողնի:

Նա վազեց և հույս ուներ, որ



քոթոթը կգա իր ետևից: Նա հույս ուներ, որ քոթոթը կբարձրանա, կսեղմվի դռանը, կնստի դռան մոտ, կվնգստա, և մայրը կխըղճա նրան ու ներս կթողնի:

Մայրը դեռ չէր եկել: Հայրը թերթ էր կարդում: Ամեն երեկո հայրը թերթ էր կարդում: Սենյակում Արտակի ձեռքերն ու ոտքերը տաքացան: Հայրը թերթ էր կարդում ու երբեմն նայում ժամացույցին: Արտակը պատշգամբ գնաց: Բակում մութ էր: Քոթոթը ոչ մի տեղ չէր երևում: Չէին երևում նաև նրա փոքրիկ թաթերի հետքերը ձյան վրա: Ոչինչ չէր երևում: Մութ էր:

— Նե՛րս արի,— կանչեց հայրը,— կմրսես:

Արտակը ներս եկավ ու ծածկեց դուռը:

— Պա՛պ,— ասաց Արտակը,— նա ո՛չ մի տեղ չի երևում:

— Ո՞վ,— կարմացավ հայրը: Նա մոռացել էր քոթոթի մասին:

— Քոթոթը,— ասաց Արտակը:

Հայրը չպատասխանեց: Նա շատ հետաքրքիր բան էր կարդում:

— Պա՛պ, իսկ ինչո՞ւ քոթոթին չի կարելի տուն բերել:

— Չգիտեմ,— ասաց հայրը:

— Նա կպառկեր բազմոցի տակ:

— Բազմոցի տակ չեն պառկում:

— Դրսում նա կմրսի:
— Չի մրսի,— հայրը գլուխը չէր բարձրացնում թերթից:
— Իսկ ես ինչո՞ւ եմ մրսում:
— Դու մրսում ես, բայց նա չի մրսի:
Արտակը դեմքը կպցրեց ապակուն: Քոթոթը ոչ մի տեղ չէր երեվում:
— Քո քոթոթն արդեն գնացել է,— ասաց հայրը:
— Չի գնացել,— պատասխանեց Արտակը:— Նա ինձնից չէր հեռանում:
— Շները մի տեղ չեն նստում,— ասաց հայրը,— նրանք շարունակ թափառում են: Հիմա նա ուրիշ ընկեր գտած կլինի:
— Ոչ մի տեղ էլ չի գնացել,— կրկնեց Արտակը,— նա շարունակ իմ ետևից էր գալիս:
Երևի թերթում ուրիշ հետաքրքիր բան չկար: Հայրը ծալեց թերթըն ու սեղանին դրեց: Նա շատ երկար նայեց իր որդուն, այնպես լուրջ նայեց, ինչպես մեծ մարդուն կնայեր:
— Գիտե՞ս ինչ,— ասաց նա,— քո քոթոթը ոչ մի տեղ էլ չի գնացել:
Արտակը դեմքը ապակուն կըպցրած մութ բակն էր դիտում:
— Գնացել է,—հանկարծ ասաց նա:



— Չի գնացել: Իսկ եթե գնացել է, վաղն անպայման կվերադառնա:
— Չի վերադառնա,— ասաց Արտակը:—Նա ուզում էր մեկ մոտ գալ, իսկ ես ասացի, որ չգա իմ ետևից: Նա չի վերադառնա:
Հայրը վերցրեց թերթը, բացեց, բայց հիշելով, որ այնտեղ կարդալու հետաքրքիր բան չի մնացել, նորից ծալեց ու դրեց սեղանին:
— Գիտե՞ս ինչ,— ասաց նա,— ավելի լավ է, եկ մինչև մայրիկի գալը մի որևէ հետաքրքիր բանով զբաղվենք: Ուզո՞ւմ ես քեզ համար քոթոթ նկարեմ: Կամ միգուցե ավելի լավ է, նապաստա՞կ: Քոթոթն ընկել է շլդիկ նապաստակի ետևից: Հետաքրքիր է, չէ՞: Ասենք ուրիշ բան էլ կարող եմ նկարել: Ի՞նչ ես ուզում նկարեմ:
— Ծովախոզուկ,— ասաց Արտակը:
— Ծովախոզո՞ւկ,— հայրը ոչ լսել էր, ոչ էլ պատկերացնում ուներ, թե ինչպիսին են լինում ծովախոզուկները:—Ասում ես՝ ծովախոզո՞ւկ: Ավելի լավ չէ՞ սպիտակ արջեր նկարեմ:
— Ոչ,— ասաց Արտակը:— Ծովախոզուկ:
— Շատ լավ,— ասաց հայրը,— կնկարենք ծովախոզուկ: Թուղթ ու մատիտ բեր, և ես քեզ համար ծովախոզուկ կնկարեմ: Կապույտ ծով և մի շատ սիրուն, սպիտակ ծովախոզուկ:

---

# ԱՅԳԵՊԱՆԻ ՏՆԱԿԸ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Քարափը մամռոտ լուռ նայում է ցած,
Էլ խոնավ ժայռից ջրեր չեն ծորում.
Ուշ աշնան նման լրիվ դատարկված,
Մի անմարդ տնակ ննջում է ձորում:
Թախծում են, կարծես, ճամփան ու այգին,
Գետն է սառցի տակ երգում հոգեթով,
Նայում են հեռվից ցածրիկ տնակին
Լեռները իրենց ճերմակ հեքիաթով:
Գիշերամուտն է աստղերով հազար
Զմռան երազի զանգերն օրորում,
Մենությունն ուսած՝ խաղաղ ձոր ու սար,
Ինչ-որ մարդկային մի բան են խորհում:
Խորհում են նրանք այն տնակի հետ,
Կարծես մտածում այն բանի մասին,
Թե ե՞րբ է գալու, ե՞րբ է գալու ետ
Տեր այգեպանը՝ սուր բահը ուսին:
Ցուրտ գիշերվա մեջ աստղերն են ծորում,
Կաթում է նրանց երազանքն անծայր,
Իսկ տնակը հին՝ հայրենի ձորում,
Երգում է մարդու կարոտը պայծառ:

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ




# ՄՈՍԿՎԱՅԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԲԼՈՒՐՆԵՐՈՒՄ

Գեղարվեստորեն ու ճաշակով ձևավորված «շախմատային» երկու փաստաթուղթ է դրված մեր առջև: Եկեք ծանոթանանք դրանց բովանդակությանը: Մեկի վերնագիրն է «Պատվոգիր»: Գրված է այսպես. «Հոկտեմբերյանի № 2 դպրոցի աշակերտ Ավետիք Մուրադյանին, որը իր թիմում բոլորից լավ արդյունքն ունեցավ»: Պարգևատրել է Մոսկվայում լույս տեսնող «Պիոներ» ամսագրի խմբագրությունը: Մյուսը, որ բացի Ավետիքից ստացել են նաև Հոկտեմբերյանի պիոներական «շախմատային» ջոկատի անդամներ Աշոտ Հայրապետյանը, Սամվել Մկրտչյանը, Մելսիկ Գևորգյանը և Խանում Մնացականյանը, ստորագրել է «Սպիտակ նավակ» ակումբի պրեզիդենտ (այո, այդպես էլ ասված է՝ պրեզիդենտ) Տիգրան Պետրոսյանը: Այդ փաստաթուղթը հանձնված է մեր երեխաներին այն բանի համար, որ նրանք մասնակցել են պիոներական ջոկատների համամիութենական առաջին շախմատային մրցումների եզրափակիչ փուլին:

Շատ ամիսներ առաջ երկրի կոմերիտական, պիոներական, սպորտային և ժողկրթության կազմակերպությունները նախաձեռնեցին մի արտակարգ հետաքրքիր միջոցառում պիոներական հասակ ունեցող շախմատիստների համար: Միջոցառմանը մասնակցեց Սովետական Միության շուրջ հիսուն հազար պիոներական ջոկատ: Դրանցից միայն տասնութը իրավունք ստացան մեկնել Մոսկվա և մասնակցել համամիութենական մրցումներին: Եվ այդ «երջանիկների» թվում էին Հոկտեմբերյանի պիոներները: Իսկ ինչո՞ւ Հոկտեմբերյանի, այլ ոչ հանրապետության ուրիշ քաղաքի: Նրանք հաղթող հան-

դիսացան նախ Էջմիածնի փնջային, ապա «իրենց դաշտում» կայացած հանրապետական մրցումներում, որտեղ մասնակցում էին Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ղափանի և այլ շրջանների տասը ջոկատ:

Այն օրերին, երբ Մոսկվայի էստրադային թատրոնում մրցում էին Տ. Պետրոսյանն ու Բ. Սպասսկին, մայրաքաղաքի Լենինյան բլուրներում գտնվող պիոներական պալատի շախմատի ակումբում իրենց «վեճը» սկսեցին համամիութենական տուրնիրի մասնակիցները: Մրցապայքարի մեջ մտան բոլոր միութենական հանրապետությունների, ինչպես նաև Մոսկվայի ու Լենինգրադի տասնութ ջոկատ: Առաջ անցնելով նշենք, որ ընդհանուր թիմային հաշվարկում հայ պիոներները գրավեցին 10-րդ տեղը, ետ թողնելով Լենինգրադի, Լիտվայի, Ուզբեկստանի և մի շարք այլ թիմերի: Մեր թիմին բոլորից շատ միավորներ բերեց Ավետիքը՝ 6 (9-ից): 5-ական միավոր վաստակեցին Սամվելը և Մելսիկը: Հայ պիոներների ելույթը Մոսկվայում պետք է բավարար գնահատել: Չէ՞ որ մասնակցող թիմերից տասնմեկում միութենական հանրապետությունների մայրաքաղաքների շախմատիստներն էին խաղում: Տողերիս հեղինակը մի քանի անգամ եղավ Լենինյան բլուրներում, դիտեց պիոներների խաղերը: Հոկտեմբերյանցիները անշուշտ շնորհալի երեխաներ են և, որ կարևոր է, չափից շատ սիրում են շախմատը: Միայն փորձի բացակայությունը և տեսական գիտելիքների պակասը թույլ չտըվեց նրանց գրավել ավելի բարձր տեղ: Թիմի ղեկավար Ստ. Եղիազարյանը մեզ հայտնեց, որ երեխաների շախմատային «ստաժը» հավասար է 1—$1\frac{1}{2}$ տարու: Մեզ թվում է, պետք է օգնել այդ ջոկատին՝ գրականությամբ, դասախոսություններով, զրույցներով, սեանսներ, խորհուրդներ տալով, ստեղծել անհրաժեշտ պայմաններ:

Որոշված է պիոներական ջոկատների շախմատային նման մրցությունները դարձնել ավանդական: Անհրաժեշտ է հենց այժմվանից հոգ տանել, որպեսզի մեր հանրապետությունում երկրորդ մրցումները անցնեն ավելի կազմակերպված և, որ շատ կարևոր է՝ մասսայական ընդգրկմամբ:

Ստորև բերում ենք Ավետիք Մուրադյանի (սպիտակներ) Մոսկվայում խաղացած պարտիաներից մեկը բաքվեցի Ռեպվակովի (սևեր) հետ: Այն ընթերցող երեխաների ուշադրությանն ենք ներկայացնում անհատական վերլուծության համար: Իհարկե, պարտիան զերծ չէ սխալներից, այնուամենայնիվ հետաքրքիր է Ավետիքի խաղը բնորոշելու համար:

1. d4 d5 2. c4 Ձf6 3. e3 g6 4. Ձc3 e6 5. Ձf3 Փg7 6. Փd3 0—0 7. b3 Ձd7 8. 0—0 b6 9. cd ed 10. Փb2 Նe8 11. Թc2 c6 12. Ձe2 Թc7 13. Նac1 Ձb8 14. Ձe5 Ձg4 15. Ձ:g4 Փ:g4 16. Ձf4 Թd6 17. h3 Փd7 18. a4 Թf6 19. b4 a5 20. ba Ն:a5 21. Նa1 Փe6 22. Նfb1 Թd8 23. Փc3 Նa8 24. Փb2 f5 25. Նa3 Փf8 26. Նaa1 Թc7 27. Փa3 Փ:a3 28. Ն:a3 Նe7 29. Նab3 Ձd7 30. Նc3 Ձb8 31. Փb5 Փd7 32. Ձ:d5 Թd6 33. Ձ:e7 Թ:e7 34. Փc4 Աg7 35. Ն:b6 Թd8 36. Նcb3 c5 37. Թb2 Ձc6 38. d5+ և սևերը անձնատուր եղան:

*ԱՆԴՐ. ՀԱԿՈԲՅԱՆ*

*ՀՍՍՀ վաստակավոր մարզիչ, միջազգային կարգի դատավոր*

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Իր ամենաերկար կոմբինացիան Ալյոխինը իրագործել է զինվորների վերջնախաղում չեխոսլովակյան վարպետ Տրեյբալի հետ 1928 թ. Պեստենում խաղացված պարտիայում: Այդ կոմբինացիայի գլխավոր տարբերակը Ալյոխինը հաշվել էր 20 քայլ առաջ: Ամերիկայի վարպետ Ֆոքսը մի անգամ իր հակառակորդին մատ է հայտարարել 22 քայլում, սակայն այդ պարտիան խաղացվել է ոչ թե խաղատախտակի վրա, այլ նամակագրությամբ:*

*1889 թ. Նյու-Յորքում անցկացված միջազգային խոշոր տուրնիրում ռուս նշանավոր շախմատիստ Չիգորինը յուրատեսակ ռեկորդ սահմանեց, հաղթելով 27 պարտիաներում: Չիգորինի «մրցակիցը» այդ տուրնիրում Մակ-Լեոդն էր, որը գրավեց վերջին տեղը. նա իրեն պարտված էր ճանաչել 37 անգամ...*

*Հունգարիայի թիմային առաջնությունում (1940 թ.) վարպետ Շտերկը, սպասելով հակառակորդի քայլին, քնեց: Նրան արթնացրեց խաղընկերը, որը հերթական քայլը կատարելիս, նավակով թրխկացրել էր խաղատախտակին: Արթնանալով, ծերունազարդ վարպետը ոտքի ելավ, վերցրեց գլխարկը և ուղղվեց դեպի ելքը: Զարմացած խաղընկերը կանչեց նրա ետևից.*

*— Վարպե՛տ, դուք մոռացաք կատարել ձեր քայլը:*

*— Ես մտադիր չեմ ժամանակ վատնել, ձեզ ցուցադրելու բոլոր տարբերակները,— վրդովվեց Շտերկը:— Հանձնվել եք, նշանակում է ամեն ինչ վերջացած է...*

*Մեր վարպետը, հավանաբար, երազում տեսել էր, որ ինքը շահել է պարտիան:*

# ԱՄԵՆԱԼԱՎ ՀԵՔԻԱԹԸ ԿԱՐՄԻՐ ԳԼԽԱՐԿԻ ՄԱՍԻՆ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Հավաքվեցե՛ք, երեխանե՛ր, և ես ձեզ մի լավ հեքիաթ կպատմեմ:

Եվ այսպես:

Կար-չկար, մի փոքրիկ, սիրունիկ աղջիկ կար: Բոլորը սիրում էին նրան, իսկ ամենից շատ սիրում էր տատիկը: Մի անգամ տատիկը նվիրեց նրան մի թավշե կարմիր գլխարկ, և որովհետև այդ գլխարկը նրան շատ էր սազում ու նա ուրիշ որևէ գլխարկ կրել չէր ուզում, անվանեցին նրան Կարմիր Գլխարկ:

Եվ ահա, մի անգամ մայրիկը ասում է նրան.

— Կարմի՛ր Գլխարկ, ահա քեզ կարկանդակ ու մի շիշ գինի: Տա՛ր այս ամենը տատիկին: Նա հիվանդ է ու թույլ, թող ուտի, լավանա: Տանից վաղ դուրս արի, քանի դեռ շոգ չէ, և նայիր, գնա խելոք, ինչպես որ հարկն է, ճանապարհից մի՛ շեղվիր, թե չէ՝ կարող ես ընկնել, շիշը ջարդել և այն ժամանակ տատիկին ոչինչ չի մնա:

Երեխանե՛ր, դուք արդեն կռահում եք. «Ա՜հ, սա հո Կարմիր Գլխարկի մասին հեքիաթն է, մենք այդ հեքիաթը վաղուց ենք լսել...» Բայց լսեք այնուհետև...

Եվ այսպես, առավոտյան հրաժեշտ տվեց Կարմիր Գլխարկը մայրիկին ու դուրս եկավ տանից: Իսկ տատիկը ապրում էր հեռու անտառում: Նոր էր Կարմիր Գլխարկը մտել անտառ, իսկ դիմացից գալիս է գայլը:

— Բարև՛, Կարմի՛ր Գլխարկ,— ասաց գայլը:

— Շնորհակալ եմ բարի խոսքի համար,— ասաց Կարմիր Գլխարկը:

— Այդպես վաղ այդ ո՞ւր ես շտապում, Կարմի՛ր Գլխարկ:

— Տատիկիս մոտ:

— Իսկ այս ի՞նչ է գոգնոցիդ մեջ:

— Գինի և կարկանդակ: Մայրիկս է թխել: Մենք ուզում ենք տատիկիս ուրախացնել, նա հիվանդ է ու թույլ, թող լավանա:

— Կարմի՛ր Գլխարկ, իսկ որտե՞ղ է ապրում քո տատիկը:

— Այնտեղ՝ անտառում, դեռ բավական ճանապարհ կա, երեք ընկուզենիների տակ նրա խրճիթն է: Դու հո գիտես:

«Լավ աղջիկ է,— ինքնիրեն մտածեց գայլը,— հաճելի պատառ կլինի ինձ համար, իհարկե, ավելի համեղ, քան պառավը: Բայց որպեսզի երկուսին էլ ուտեմ, պետք է գործը հմտորեն տանեմ, ինչպես որ հեքիաթում գրված է»:

Եվ ասաց գայլը.

— Կարմի՛ր Գլխարկ, հապա՛ նայիր շուրջդ ինչքա՜ն գեղեցիկ ծաղիկներ կան: Ինչո՞ւ, դու չես նայում շուրջըդ, մի՞թե դու չես լսում, թե ինչպես են գեղգեղում թռչունները, դու շտապում ես, կարծես թե դասի ես գնում, իսկ անտառում ինչքա՜ն ուրախ է:

Նայեց Կարմիր Գլխարկը շուրջը և տեսավ, թե ինչպես ամենուր խաղում են արևի շողերը, թափանցելով ծառերի արանքից, ամեն ինչ շուրջը գունագեղ է, և ասաց.

— Ճիշտ է, գա՛յլ, լավ կլիներ տատիկին մի փունջ թարմ ծաղիկներ տանել, դա նրան, իհարկե, հաճելի կլիներ, և դեռ վաղ է, ես կհասցնեմ ծաղիկներ հավաքել, բայց, ա՛յ, դու այն ժամանակ կգնաս, կգտնես տատիկիս տնակը, կխաբես, նա կբանա դուռը և դու նրան կուլ կտաս: Ախր հեքիաթում այդպես է գրված: Եվ հեքիաթը լսող բոլոր երեխաները այստեղ շատ-շատ կվշտանան:

Մտածեց, մտածեց գայլը և ասաց.

— Կարմի՛ր Գլխարկ, դու գիտե՞ս, թե հիմա ես ինչքան քաղցած եմ: Ես պիտի կուլ տամ տատիկիդ և քեզ, որպեսզի կշտանամ և քնեմ, ինչպես այդ հեքիաթում գրված է: Ճիշտ ես ասում, որ ամեն անգամ հեքիաթի այդ տեղում երեխաները տխրում են: Խոստովանում եմ, ինձ էլ ամեն անգամ այդ բանը դուր չի գալիս: Հապա ի՞նչ անենք:

— Ինքդ մտածիր, թե ինչ անենք:

Նստեցին ճանապարհի եզրին, Կարմիր Գլխարկն ու գայլը, մտածեցին, մտածեցին և գտան:

Դուրս եկան ճանապարհից, մտան անտառի հենց թավուտը և սկսեցին ծաղիկներ հավաքել: Պոկում են մի ծաղիկ և մտածում են. «Իսկ այն կողմում ահա աճում է ավելի գեղեցիկը» և այդ մեկի մոտ են վազում: Եվ մի մեծ փունջ կազմեցին, այնքան մեծ, որ Կարմիր Գլխարկը այլևս չէր կարողանում տանել: Բռնեց գայլը այդ փունջը իր բերանով և երկուսով ուրախ ճանապարհ ընկան դեպի տատիկի տնակը: Հասան, դուռը թակեցին:

— Ո՞վ է,— հարցրեց տատիկը:

— Ես եմ, տատի՛կ, Կարմիր Գլխարկը: Քեզ համար գինի ու կարկանդակ եմ բերել:

— Իսկ դու սեղմիր սողնակը,— ասաց տատիկը,— ես շատ թույլ եմ և տեղիցս ելնել չեմ կարող:

Սեղմեց Կարմիր Գլխարկը սողնակը, դուռը բացվեց, և տատիկը տեսնելով գայլին՝ վախեցած հարցրեց.

— Իսկ դա ո՞վ է:

— Սա մեր հեքիաթի գայլն է, տատի՛կ,— ասաց Կարմիր Գլխարկը:

— Դե, ի՞նչ է,— ասաց տատիկը,— հիմա նա ինձ պիտի կո՞ւլ տա:

— Ո՛չ, տատի՛կ,— ասաց Կարմիր Գլխարկը,— նա որոշել է քեզ չուտել և ոչ էլ՝ ինձ, որպեսզի հեքիաթը լսող երեխաները չվշտանան:

— Այ, դա լա՜վ է,— ասաց տատիկը,— թե չէ առանց այդ էլ ես հիվանդ եմ և գայլի փորում մնալը ինձ համար շատ դժվար է:

— Տե՜ս, տատի՛կ, նա քեզ ծաղիկներ է բերել: Նըստի՛ր, գա՛յլ,— ասաց Կարմիր Գլխարկը:

— Օ՜, ինչպիսի խոշոր աչքեր ունի նա՜,— ասաց տատիկը:

— Դա՝ որպեսզի մութ անտառում լավ տեսնեմ,— հորանջելով ասաց գայլը:

— Օ՜, ինչպիսի խոշոր ատամներ ունի՜:

— Դա՝ որպեսզի նապաստակներ ու ոչխարներ ուտեմ,— ասաց գայլը:— Ինչ արած, մենք այդպես ենք ստեղծված, մեր արհեստն էլ դա է:— Ո՜ւհ, գրողը տանի, ինչպե՜ս քաղցած եմ, անչափ քաղցած եմ, չէ՞ որ համաձայն հեքիաթի հիմա ես ձեզ երկուսիդ էլ կերած պիտի լինեի:

— Մի քիչ համբերի՛ր,— ասաց Կարմիր Գլխարկը:— Հիմա, ուր որ է, այստեղով պիտի անցնի որսորդը: Նա, հավանաբար որևէ բան որսած կլինի:

Սպասում է գայլը, իսկ աղիքները քաղցից գալարվում են: «Բայց միևնույն է,— մտածում է գայլը,— ես նրանց կուլ չեմ տա, որպեսզի երեխաները չվշտանան»: Եվ որպեսզի իր գրգռված ախորժակը զսպի և մոռանա քաղցը, գայլը սկսեց խոսել եղանակի մասին, անտառի իր գործերի մասին:

— Աղվեսի բանը լավ է, նա կարողանում է խորամանկությամբ նապաստակներ որսալ, մեկ-մեկ գյուղերից հավ-ճիվ է թռցնում: Իսկ ես արդեն պառավել եմ, չեմ կարողանում: Գյուղի ամենավատ շներն անգամ ինձ հալածում են: Ապրելը դժվարացել է...

Մինչ այդ, անտառով անցավ որսորդը: Կանգնեց պառավի տնակի մոտ, ականջ դրեց: Տեսավ՝ դուռը կրնկի վրա բացված չէ և ներսից ուժգին խռռոց չի գալիս: «Մի՞թե ես սխալվել եմ,— ինքն իրեն ասաց որսորդը:— Ո՛չ, ահա երեք մեծ կաղնի ծառերը, ահա քիչ հեռվում կաղնուտը»: Եվ մտածեց որսորդը. «Այս ի՞նչ բան է, պառավի տանից ուրախ ձայներ են լըսվում: Սիրտս վատ բան է նախազգում. այստեղ ինչ-որ բան հեքիաթի համաձայն չէ...»

Ներս մտավ որսորդը տնակ և տեսավ գայլը նըստած է Կարմիր Գլխարկի հետ, իսկ մահճակալի վրա պառկած է իսկական հիվանդ տատիկը:

— Գուցե ես մի քիչ վա՞ղ եմ եկել, և նա դեռ չի՞ հասցրել ձեզ կուլ տալ,— ասաց որսորդը և նայեց թևի ժամացույցին:— Այդ դեպքում ներողամիտ եղեք, ես կգնամ, մի քիչ էլ կթափառեմ անտառում, մինչև նա ձեզ կուլ տա:

— Սպասի՛ր, որսո՛րդ քեռի,— ասաց Կարմիր Գըլխարկը:— Մենք որոշել ենք այնպես անել, որ ամբողջ հեքիաթի ընթացքում երեխաները ոչ մի անգամ չվըշտանան: Գայլը համաձայնեց մեզ կուլ չտալ, իսկ դուք պիտի համաձայնեք նրան չսպանել...

«Ահա, թե ի՜նչ,— մտածեց որսորդը,— իսկ ես արդեն դանակս պատրաստել էի գայլի փորը ճեղքելու համար և քարեր էի հավաքել նրա որովայնը լըցնելու»:

— Դեհ, ի՞նչ արած,— ասաց որսորդը,— եթե ամեն ինչ արվում է, որպեսզի հեքիաթը լսող երեխաները գոհ լինեն, ես էլ համաձայն եմ գայլին չսպանել: Բարև՛, գա՛յլ:

— Բարև՛, որսո՛րդ,— ասաց գայլը:

— Հիմա մենք ի՞նչ պիտի անենք,— ասաց որսորդը,— ինչպե՞ս պիտի վերջացնենք հեքիաթը:

— Ինչպես պիտի վերջացնե՞նք,— ասաց Կարմիր Գլխարկը:— Նախ՝ գայլը քաղցած է մնացել, նրան պետք է կերակրել:

— Ի՞նչ անենք,— ասաց որսորդը,— հակառակի պես ես էլ այսօր ոչինչ չեմ որսացել:

— Մտահոգվելու հարկ չկա,— ասաց տատիկը:— Կարմի՛ր Գլխարկ, գնա՛ մառանը, բե՛ր թարմ կաթ ու պանիր:

Գնաց Կարմիր Գլխարկը մառան, բերեց թարմ կաթ ու պանիր, սեղանին դրեց նաև իր բերած կարկանդակն ու գինին: Նստեցին բոլորը սեղանի շուրջ, բարեկամաբար, կերան, խմեցին, ուրախացան: Տատիկն էլ կերավ Կարմիր Գլխարկի բերած կարկանդակը, խըմեց գինին և սկսեց առողջանալ ու ուժ հավաքել: Իսկ հրաժեշտին տատիկը ասաց գայլին.

— Այստեղով անցնելիս լինես, մի՛ ամաչիր, մտի՛ր, լավ հյուրի համար միշտ էլ ուրախ կլինենք:

— Կգամ,— ասաց գայլը,— ինչո՜ւ մենք բարեկամներ չպիտի լինենք, ախր, չէ՞ որ մեր հեքիաթը շատ հին է:

Հետո գայլն ու որսորդը հրաժեշտ տվին իրար, և ամեն մեկը գնաց իր ճանապարհով: Ճիշտ է, գայլը այնքան էլ կուշտ չէր, իսկ որսորդը տուն էր գնում առանց գայլի մորթու, բայց երկուսն էլ գոհ էին:

Կարմիր Գլխարկն էլ՝ այդ գիշեր մնաց տատիկի մոտ, իսկ առավոտյան ճանապարհ ընկավ դեպի տուն: Եվ ճանապարհին մտածում էր. «Նույնիսկ չար գայլին կարելի է համոզել մարդկանց վնաս չտալ: Ճիշտ է, հեքիաթը մի քիչ անհետաքրքիր ստացվեց, բայց այնտեղ ոչ ոք ոչ ոքի չկերավ, ոչ ոք ոչ ոքի չսպանեց, և երեխաները, ամբողջ հեքիաթը լսելիս, ոչ մի անգամ չվշտացան ու չտխրեցին»:



# ԶԳՈՒ՛ՅՇ, ՎՏԱՆԳԱՎՈՐ Է



«Կգա ժամանակ,— դարասկզբին գրում էր գերմանական հայտնի մանրէաբան Ռոբերտ Կոխը,— երբ մարդկությունը ստիպված կլինի աղմուկի դեմ ծավալել այնպիսի անողոք պայքար, ինչպիսին ոչ հեռու անցյալում մղում էինք ժանտախտի ու խոլերայի դեմ»: Հազիվ թե գիտնականը ենթադրեր, որ մարդը այդ խնդրի հետ կբախվի ընդամենը մի քանի տասնամյակ հետո:

***

Ականջը, հավանաբար, ամենից անպաշտպան զգայարանն է: Նա զուրկ է պաշտպանական այնպիսի միջոցներից, ինչպիսիք, ասենք, թարթիչներն են աչքերի համար, որպեսզի նախապահպանվի չափազանց վտանգավոր ձայնային տատանումներից:

Քնած վիճակում թե արթուն, բոլոր պահերին, ականջը արձագանքում է խշշոցին, թակոցին, իսկ աղմուկը ժամանակակից քաղաքում քանի գնում շատանում է:

Աղմուկները թափանցում են փողոցից, տան խորքից, պարուրում են մեզ աշխատանքի վայրում: Դրանք ականջի մեջ էլեկտրական իմպուլսներ են առաջացնում, որոնք ուղղվում են դեպի կենտրոնական ներվային համակարգը: Ներվային թելիկների «խաչմերուկում» ինչունական ազդանիշերը մի պահ ետ են ընկնում, ապա լարերով տարածվում օրգանիզմով մեկ: Գրգռվում է ոչ միայն ուղեղը, այլև ամբողջ վեգետատիվ ներվային համակարգը: Աղմուկից մենք կարող ենք ստամոքսի կծկումներ, սրտխըփոցի սաստկացում ունենալ: Հնչյունը հաղորդվում է ոչ միայն թմբկաթաղանթին, այլև լյարդին ու լեղապարկին: Մակերիկամային գեղձը սկսում է ադրենալին (գրգռող նյութ) արտադրել, ինչպես դա լինում է ծայր աստիճան վտանգավոր պահերին:

Այդպիսի ռեակցիան լիովին բացատրելի է: Մարդկային օրգանիզմը հարմարվել է հնչյունային գրգիռներին դեռ հին ժամանակներից, երբ հնչյունը մեր նախնիների համար վտանգի ազդանշան է եղել: Այժմ, երբ վտանգը պակասել է մեզ համար, մարդու օրգանիզմը իզուր է գրգռվում ու վնասում իրեն:

Գիտնականները հաստատել են, որ աղմուկը մինչև 35 դեցիբել (ջրի խշշոցը ծորակում) թեկուզ վտանգավոր չէ, բայց խանգարում է կենտրոնանալուն: 35 դեցիբելից բարձր (ջրի ուժեղ հոսանքը) աղմուկը գրգռում է մեզ: 55—85 դեցիբելի (ճիչեր բակում) երկարատև ազդեցությունը տանջալի է: 85 դեցիբելից բարձր աղմուկը լուրջ բարդություններ և նույնիսկ հոգեկան խանգարումներ կարող է առաջացնել:

Մինչդեռ այդքան աղմուկ ըստեղծում են սովորական ավտոմեքենաների շարժիչները:

Աղմուկը, հաստատում են գիտնականները, նույնքան լուրջ խնդիր է, ինչպես օդի կեղտոտումը, ջրերի վարակումը թունավոր մնացուկներով: Տեխնիկայի զարգացման հետ աղմուկն ավելի է շատանում (տարում՝ մոտ մեկ դեցիբել ամբողջ հողագնդով մեկ): Եթե ոչինչ չձեռնարկվի, ապա 2000 թվականին աղմուկի ինտենսիվությունը կբարձրանա 34 միավորով:

Կա՞ն արդյոք աղմուկի դեմ պայքարելու միջոցներ: Սեփական բնակարանում դա հեշտ է անել: Գետնին փռած գորգը խլացնում է քայլերի ձայնը (60 դեցիբել): Աղմուկը մեկուսացնում են նաև պատերի մոտ տեղադրված պահարանները և գրադարակները: Ձեռնարկություններում, ուր հակարավոր հաստոցներ են աշխատում, այդ ձևով աղմուկը չես խլացնի: Պետք է կատարելագործել հաստոցները, պատերը ծածկել աղմուկը կլանող հատուկ նյութերով:

Ճիշտ է, այս միջոցները լիարժեք չեն: Հետագայում բոլոր քաղաքները պետք է ակուստիկ ծրագրով կառուցվեն, հաշվի առնելով քաղաքացիների և ձեռնարկությունների շահերը: Այդ բոլորին կարելի է հասնել միայն բնակելի և արդյունաբերական շենքերի ռացիոնալ ծրագրումով, հաշվի առնելով տեղի ռելյեֆի առանձնահատկությունները: Չըպետք է մոռանալ նաև կանաչ գոտիները: Մեկ քառակուսի մետրը կանաչը իջեցնում է աղմուկի մակարդակը 0,15—0,3 դեցիբելով: Ռոբերտ Կոխի մարգա-




րեությունը հաստատվում է: Հիմա արդեն մենք մեկ աղմուկից այնպես պետք է պահպանենք, ինչպես վարակիչ հիվանդություններից:

• Հատուկ լրջությամբ պետք է վերաբերվել ինֆրահնչունային անլսելի տատանումներին: Դրանց վտանգի աստիճանի մասին մի ֆրանսիացի գիտնական վերջերս հաղորդել է հետևյալը: «Երեք տարի առաջ,— պատմում է պրոֆեսոր Գավրոն,— կատարվեց անսպասելի մի բան: Մեկ ժամ աշխատելուց հետո, մեր լաբորատորիայում գլխացավից, սրտխառնոցից աշխատել չէինք կարողանում և գնում էինք ուրիշ տեղ»:

Տարբեր հիպոթեզներ կային. «Ուլտրահնչյուն», «Մագնիսական դաշտեր», «Ռադիոակտիվ ճառագայթումներ»: Դեռ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ հաջողվեց պարզել, որ լաբորատորիայի աշ'. տողներին շարքից հանում էին անլսելի տատանումները, որոնց էլեկտրամագնիսական տատանումների է ենթարկել հարևան գործարանի կտուրին տեղադրված օդամուղ մեքենան:

Գիտնականները սկսեցին ուսումնասիրել ինֆրահնչյունների կենսաբանական ազդեցությունը: Ստեղծվել էին ցածր հաճախականության տատանումների հատուկ աղբյուրներ: Բազմաթիվ փորձարկումներից հետո պարզեցին, որ մարդու համար ավելի վտանգավոր են 7 հերցի հասնող տատանումները: Պրոֆ. Գավրոն դրանք «մահացու» է համարում: Հաճախականությամբ համընկնելով ուղեղի կենսաէլեկտրական հոսանքների ալֆա-ալիքների հետ, դրանք անկարելի են դարձնում մտավոր աշխատանքը, ցրում ուշադրությունը և տեսողության երկարատև խանգարումներ առաջացնում:

Մեկ վայրկյանում 37 տատանում ունեցող հաճախականության ինֆրահնչյունները ներքին օրգանների՝ սրտի, թոքերի, ստամոքսի յուրօրինակ բորբոքումներ են առաջացնում: Այդ բոլորի պատճառը դարձյալ ռեզոնանսն է:

Ցածր հաճախականություն ունեցող աղմուկը սովորականից տարբերվում է բոլոր արգելքները թափանցելու, և ակունքից շատ հեռու տարածվելու իր հատկությամբ: Ճիշտ է, որ ինֆրահնչյունների ազդեցությունը, ինչպես ցույց են տվել փորձերը, զգալի թուլանում է, եթե դրանց հետ միաժամանակ ազդում է սովորական աղմուկը:

Պետք չէ իհարկե մտածել, որ մարդը անլսելի, բայց վտանգավոր հնչյուններին թույլ կտա ազատ թևածել: Գիտնականները գտել են դրանց, բնորոշել, որ վտանգավոր են, նշանակում է շուտով հուսալի մի պաշտպանություն կստեղծեն հանգիստը խանգարողների դեմ:





## ԵՂՋՅՈՒՐԻ ԿԵՆԱՐԱՐ ՈՒԺԸ

*Անտառը խշխշաց, և ճյուղերի արանքից երևաց գեղեցիկ ու հըզոր եղջյուրներով եղջերուի գըլուխը: Սլացիկ, շագանակագույն եղջերուն դուրս էր եկել անտառի եզրը: Նա լարեց իր ուշադրությունը, նայեց աջ ու ձախ, ապա՝ ետ:*

*Դա ազդանշան էր: Առաջնորդին հետևեց ամբողջ հոտը: Առաջնորդը մի պահ ևս լարեց ուշադրությունը, իսկ հետո նրա թավշյա շուրթերը հպվեցին կեչու դալար տերևներին: Նրա օրինակին հետևեցին նաև մյուսները:*

*Եվ երբ արևը իջավ արևմուտքի հեռավոր բարձունքին, հովիվը հոտը ետ դարձրեց դեպի տուն, եղջերաբուծական սովխոզ:*

*Եղնիկը ազնվացեղ եղջերուի ենթատեսակն է և շատ արժեքավոր կենդանի: Նա տալիս է համեղ*



միս, թանկագին մորթի: Սակայն ամենաարժեքավորը նրա եղջյուրներն են: Հունիսի կեսերին էգերի եղջյուրները հասնում են 70—100 սմ երկարության և ունենում են 5—7 կգ քաշ:

Կենդանիներին մտցնում են հատուկ սարքավորման մեջ, որտեղ սովորական բժշկական սղոցով կտրում են նրանց եղջյուրները: Մինչև հաջորդ ամառ եղջյուրները նորից աճում են և վիրահատությունը դարձյալ կրկնվում է: Որոշ մշակումից հետո եղջյուրները ուղարկվում են դեղագործական գործարանները: Այնտեղ դրանցից պատրաստում են հրաշալի բուժիչ դեղ, որը կոչվում է պանտոկրին:

Դարեր շարունակ եղջյուրները «կյանքի արմատի»՝ ժենշենի հետ միասին, բժշկության մեջ օգտագործվել են որպես բուժիչ դեղամիջոց: Բժիշկները այդ դեղը նշանակում էին սակավարյունության, գերհոգնածության ժամանակ: Եղջյուրների հրաշագործ, բուժիչ հատկությունները Արևելքում ծնում էին զանազան առասպելներ: Չինաստանում ոսկով կամ արծաթով երիզված եղջյուրները նվիրում էին նորապսակներին՝ նրանց հարսանյաց օրը. դա ընկալվում էր որպես առողջության, երջանկության և հաջողության խորհրդանիշ:

Եղջերաբուծությունը, որպես անասնաբուծության եզակի և շահութաբեր ճյուղ, մեզ մոտ արագ կերպով սկսեց զարգանալ հեղափոխությունից հետո: 1929 թվականին Ալթայում բացվեցին մի քանի մասնագիտացված սովխոզներ, որտեղ և զբաղվեցին գիտականորեն հիմնավորված տեսակավորման հարցերով:

Հենց այդ ժամանակ էր, որ ծովամերձ շրջաններից Ալթայ բերեցին երկու հարյուր բծավոր եղջերու: Նորեկներին դուր եկան այդտեղի հարուստ արոտավայրերը: Եվ չնայած Սիբիրի դաժան ձմեռներին, նրանք հրաշալի կերպով հարմարվեցին այդ բնությանը: Դրանց եղջյուրները թեև քաշով զիջում են, սակայն բուժիչ հատկություններով գերազանցում են բնիկ եղջերուների եղջյուրներին:

Երեսնական թվականներին մի խումբ սովետական բժիշկներ, պրոֆեսոր Ս. Մ. Պավլենկոյի ղեկավարությամբ մշակեցին պանտոկրին ստանալու եղանակը. կատարեցին մի շարք կլինիկական գիտափորձեր: Այո՛, իսկապես որ պանտոկրինը հրաշք դեղ

---

# ՔՈԹ ՍՈՒՆՍ



**«Մենք մարդկային էակներ չենք: Մենք «քոթ սունս» ենք, լճերի արարածներ: Ինկերից էլ առաջ, շատ ավելի առաջ, քան երկնային հայր Թա Թի Թուն կստեղծեր քեչուա և այմարա ցեղերի հնդկացիներին, ավելի առաջ, քան արևը կլուսավորեր երկիրը, երբ դեռ ամբողջ աշխարհը խորասուզված էր կիսամութի մեջ, երբ միայն լուսինն ու աստղերն էին լուսավորում, երբ Տիտիկակա լիճը հասնում էր մինչև հովտի եզրերին, մեր նախնիներն ապրում էին այստեղ:**

**Մենք այնպիսին չենք, ինչպես բոլոր մյուս մարդիկ: Մենք չենք զգում ձմեռային գիշերների ցուրտը: Մեր արյունը սև է և մենք ջրում չենք խեղդվում: Ուրիշների համար մահաբեր Տիտիկակայի խոնավ մուժը անվնաս է մեզ համար: Եվ արևի կատաղի ճառագայթն էլ անզոր է մեզ վնաս պատճառելու: Մենք չենք խոսում ամուր երկրի մարդկանց լեզվով, և նրանք էլ չեն հասկանում մեզ: Մենք մյուս մարդկանց**

է և ունի շատ մեծ հեռանկարներ: Այն հանգստացնում է մարդու ներվային սիստեմը, բարձրացնում է աշխատունակությունը, իջեցնում է արյան ճնշումը, մեկ շաբաթվա ընթացքում, ցավոտ, ուշ բուժվող վերքերի հետքն անգամ չի մնում:

Սակայն, տեսնենք, թե ալթայցիները ինչպես են պատրաստում դեղագործության այդ հումքը: Մատաղ եղջյուրները չորացնում են այնքան, որ զրնգան: Շատ դժվար և պատասխանատու է եղջյուրների եփման պահը: Պատկերացրեք մի այսպիսի տեսարան: Եռացող ջրով լի կաթսայի կամ տաշտակի մոտ նստած են չորս մարդ, յուրաքանչյուրի ձեռքում նոր կտրած եղջյուր: Եղնիկի եղջյուրը եռացող ջրի մեջ պահում են 50—80, իսկ եղջերուինը՝ 40—50 վայրկյան: Մինչև առաջինը սառչի, երկրորդն են մտցնում ջրի մեջ և այդպես շարունակ: Այդ պրոցեսը առաջին օրը տևում է 15 րոպե, որից հետո տանում են հողմաչորանոց: Հաջորդ երկու օրերը մեկուկեսական ժամ դրանք պահում են տաք ավազանի մեջ: Որից հետո 5—6 օր շարունակ օրական 6—8 ժամ չորացնում են ջերմաչորանոցում: Եվ այդ բոլորից հետո միայն հումքը պատրաստ է լինում գործարան ուղարկելու համար:

Եղջյուրագործությունը ծանր մասնագիտություն է: Այն պահանջում է ճշգրիտ հաշվումներ, համբերություն՝ ժամերով հեղձուցիչ օդում նստելու համար:

Երկու տարի առաջ կենսաբանական գիտությունների թեկնածու Վ. Ս. Գալկինը նախագծեց եղջյուրներ եփելու մի հաստոց, որի օգնությամբ 10—15 անգամ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը:

Մեր երկիրը միակն է, որն ամբողջ աշխարհին եղջերուի եղջյուրներ է մատակարարում: Հումքի կեսը տալիս է Ալթայը և հնգամյակի վերջում երկրի դեղագործարաններին կապահովի տարեկան 13200 կգ չոր եղջյուրներով:

## ՍՂԱԳՐՈՒԹՅԱՆ ԾԱԳՈՒՄԸ

*Շատերին թվում է, թե բանավոր խոսքը հակիրճ ու արագ գրելու արվեստը 20-րդ դարի ծնունդ է, մինչդեռ այն հայտնի է եղել դեռևս 1-ին դարում (մ. թ. ա.)։ Սղագրությունն սկիզբ է առել Հին Հունաստանում, ապա լայն տարածում գտել Հռոմում՝ հռչակավոր հռետոր Ցիցերոնի ժամանակ։*

*Ցիցերոնը շատ էր մտահոգվում, որ իր ճառերը լրիվ ու ճըշգրիտ գրի առնվեն և պահպանվեն սերունդների համար։ Նա Տիրոնին պահում էր որպես մշտական սղագրող և առա՛ց նրա ոչ մի ճառ չէր արտասանում։ Նույնիսկ նամակագրությունը վարում էր սղագրողի միջոցով։*

*Մեր թվարկության առաջին դարերում սղագրությունն իսպառ մոռացության տրվեց, իսկ միջնադարում նորից գործածության մեջ մտավ և կոչվում էր տիրոնիենյան նշաններ։*

---

նման չենք: Մենք «քոթ սունս» ենք, հինավուրց մի ժողովուրդ, «ջրի ժողովուրդ» և ոչ թե ցամաքի: Մենք «լոս ուրրոս» ենք՝ երկրի առաջին բնակիչները»:

Այս տողերը վերցված են երկրագնդի ամենահանելուկային ժողովուրդներից մեկի՝ ուրրու ժողովրդի ավանդությունից, որը գրի է առել ֆրանսիացի ազգագրագետ Ժակ Վեյարը: Նա երկար տարիներ ուսումնասիրել է Անդերի կենտրոնում, Տիտիկակա լճի ափերին բնակվող ուրրու ժողովրդի սովորություններն ու կյանքը: Նրան զարմացրել էր ուրրուների ապշեցուցիչ տոկունությունը: Վիթխարի բարձրության վրա, որտեղ ցուրտը հասնում է մարդու ոսկորներին, ուրրու ժողովրդի կանայք շրջում էին բաց թևերով, իսկ երեխաները վազվզում էին ոտաբոբիկ ու առանց գլխարկի: Իրենց ցածր հասակով, գլխի երկարավուն ձևով, խոշոր աչքերով ուրրուները խիստ տարբերվում էին մայր ցամաքի մյուս հնդկացիներից, որոնք բարձրահասակ էին ու ավելի շատ նման էին մոնղոլների: Գիտնականները ենթադրում են, որ ուրրուների նախնիները հեռուներից են գաղթել: Ոմանք նույնիսկ հակված են կարծելու, որ ուրրուները ավանդություն դարձած ատլանտների հեռավոր սերունդներն են:

Ուրրուները միշտ էլ մեկուսացած կյանքով են ապրել: Նրանք երբեք հարաբերություններ չեն ունեցել հարևան ցեղերի հետ: Եղեգնյա լաստերից նրանք վիթխարի արհեստական կղզիներ են սարքել, որոնք ունեցել են հազարավոր քառակուսի մետր մակերես: Այդ արհեստական կղզիների վրա հողի շերտ են փռել, որը պարարտացրել են ձկների ոսկորներից աղացած ալյուրով: Երաշտը երբեք չի սպառնացել լողացող այդ դաշտերին և ուրրուները միշտ էլ առատ բերք են հավաքել: Հատուկ ձևով մշակված եղեգներից ուրրուները կերպաս են հյուսել և կարել հարմարավետ հագուստներ: Նույն եղեգներից նրանք կառուցել են խրճիթներ, պատրաստել են նավակներ, հյուսել են լաստեր ու խսիրներ: Իսկ եղեգնի միջուկը օգտագործել են որպես սնունդ:

Ուրրուները միշտ անկախ են եղել: Հզոր ինկերը բազմիցս փորձել են նրանց ծառայության հարկադրել իրենց բանակներում, բայց ապարդյուն: Ուրրուները պատերազմել չէին սիրում: Բայց երբ հարկադրված էին լինում կռվել հարևան թշնամի ցեղերի դեմ, ապա միշտ էլ ճակատամարտի էին դուրս գալիս բոլորովին անզեն, և բնականաբար, կոտորվում էին հարյուրնե-

րով: Երբ ինկերը ռազմական երկարատև անհաջողություններ ունեցան, տարածվեց այն նախապաշարումը, թե իբր ուրրուների աստվածներն են վրեժ լուծում: Ուստի ինկերը ետ քաշվեցին և հրաժարվեցին ուրրուներին ստրկացնելու մտքից: Խաղաղասեր ուրրուները շարունակեցին ապատ ապրել Տիտիկակա



լճի վրա, որը հնդկացիներն համարում են «սուրբ լիճ»:

17-րդ դարում իսպանական անողոք զավթիչները ջախջախեցին ինկերի միապետությունը և հրով ու սրով ներմուծեցին իրենց օրենքները: Պերուի փոխարքա Ֆրանսիսկո դը Թոլեդոն հրամայեց ուրրուներին արտաքսել իրենց արհեստական կղզիներից, որպեսզի նրանք հաստատվեն ցամաքում: Ուրրուները ոչ մի կերպ չկարողացան համակերպվել այդ նոր կենցաղին ու պայմաններին: Նրանք տասնյակներով մեռնում էին պանապան համաճարակներից: Ուստի, անտեսելով փոխարքայի հրամանը, նրանք վերադարձան իրենց հարազատ լիճը: Իսպանացիները ձեռք քաշեցին նրանցից, որովհետև ուրրուները հարուստ չէին, ոսկու և արծաթի պաշարներ չունեին:

Եվս հարյուր հիսուն տարի ուրրուները ապրեցին մեկուսի կյանքով: Եվ համեմատաբար վերջերս միայն գիտնականների ուշադրությունը բևեռվեց հանելուկային այդ ժողովրդի վրա: Սակայն արդեն չափազանց ուշ էր:



Սոսկալի երաշտը վեց տարի շարունակ մոլեգնում էր Պերուի հարթավայրերում: Մարդիկ և կենդանիները գլխակորույս փախչում էին երաշտից: Եվ միայն ուրրուները, հինավուրց այդ ժողովուրդը վճռեց պայքարել տարերային չարիքի դեմ: Պերուի առաջադեմ գործիչներն ու գիտնականները իշխանություններից օգնություն պահանջեցին ուրրուների համար: Բայց իշխանությունները պլացան և սովը հաղթեց: Ուրրուները ոչնչացան:

Մի քանի գիտնականներ մինչև հիմա էլ ենթադրում են, որ կղզյակներից մեկնումեկում թերևս ապրում են ուրրուների մեկ կամ երկու ընտանիք: Բայց ժողովուրդը այդպես էլ դադարեց գոյություն ունենալուց:






Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 1 հունվար 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*ԵՎ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ Ա. Ա. ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ո.

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—79, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05320: Պատվեր՝ 1451: Տպաքանակ՝ 73200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 30/I, 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.




### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

*1. Ծառ, որի փայտից երաժշտական գործիքներ են պատրաստում: 2. Չեխ գրող: 4. Զմեռվա սպորտային խր: 5. Լատինա-ամերիկյան պետություն կամ ջրանցք: 8. Ստ. Լիսիցյանի հանրաժանոթ հեքիաթի զվարճալի հերոսը: 9. Մարս մոլորակի արբանյակը: 10. Հին աշխարհի մեծ փիլիսոփա: 13. Արվարձան և աստղադիտարան Լոնդոնում: 14. Գարնան առաջին ծաղիկը:*

### ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

*3. Սառած ցող: 6. Հայ կոմպոզիտոր: 7. Եվրոպական պետության մայրաքաղաք: 10. Արտասովոր ձայն ունեցող երգչուհի: 11. Միջինասիական ժողովուրդ: 12. Նորվեգացի կոմպոզիտոր: 14. Մթնոլորտային տեղում: 15. Ծառաշատ տարածություն: 16. Հատապտուղ:*

*Կազմեց՝ ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆԸ*




## ԻՆՉԻ՞ ՄԱՍԻՆ ԵՆ ՍՈՒԼՈՒՄ ԴԵԼՖԻՆՆԵՐԸ

Գիտնականները բծախնդիր կերպով ուսումնասիրում էին դելֆինների կյանքը, և այդ ուսումնասիրությունների ընթացքում հետզհետե եկան այն եզրակացության, որ դելֆիններն օժտված են կենդանիների համար արտակարգ մտավոր ընդունակություններով: Պարզվեց նաև, որ դելֆինները «խոսում» են իրար հետ իրենց տարօրինակ սուլոցներով: Տարբեր երկրների գիտնականները ձեռնարկեցին դելֆինների «լեզուն» բացահայտելու գործին:

Ամերիկացի ֆիզիոլոգ Ու. Բատտոն հատուկ սարքավորման միջոցով այնպես փոխակերպեց իր ձայնի հնչյունները, որ դելֆինները հնարավորություն ունեցան լսելու և կրկնելու այն ամենը, ինչ հաղորդում էր գիտնականը: Պրոֆեսոր Բատտոյի աշխատակիցներից մեկին հաջողվեց դելֆիններին սովորեցնել իրերի անունները: Ավազանի ափին կանգնած աշխատակիցը կենդանիներին ցույց էր տալիս տարբեր առարկաներ և ասում դրանց անունները: Դելֆինները շատ արագ կարողացան ընկալել առարկայի և նրա անվան կապը:

Իսկ պրոֆեսոր Բասթիանը ուսումնասիրությունների մեկ այլ ուղի ընտրեց: Երկու դելֆինի նա տեղավորել էր մի ակվարիումում: Լույսի միջոցով դելֆիններին հրամաններ էին արձակում: Երկարատև լույսի դեպքում նրանք պետք է սեղմեին աջ լծակը, ընդհատումներով լույսի դեպքում՝ ձախը: Եթե ճիշտ էին կատարում հրամանը, դելֆիններին խրախուսում էին համեղ ուտելիքով: Երբ դելֆինները սովորեցին անսխալ կատարել հրամանները, նրանց բաժանեցին անթափանց միջնորմով: Հիմա արդեն լուսային ազդանշանը կարող էր տեսնել դելֆիններից միայն մեկը: Սակայն խրախուսանք ստանում էին այն դեպքում, երբ հրամանը կատարում էր ոչ միայն լույսը տեսնող դելֆինը, այլև մյուսը: Երկու դելֆիններն էլ հիանալի կերպով յուրացրին խնդիրը և սեղմում էին համապատասխան լծակները: Հարյուր փորձից նրանք սխալվեցին միայն երեք անգամ: Գիտնականները եզրակացրին, որ, հավանաբար, դելֆիններից մեկը ազդանշանների մասին հայտնում է մյուսին, ուրեմն և նրանք կարողանում են խոսել ու շատ լավ հասկանալ իրար:

Այժմ գիտնականները փորձում են վերծանել դելֆինների «լեզուն»:

